ՌԱԲԻՆԴՐԱՆԱԹ ՏԱԳՕՐ

# ՊԱՐՏԻԶՊԱՆԸ

ՍԻՐՈՅ
ԵՒ
ԿԵԱՆՔԻ
ՊՕԷՄՆԵՐ

RABINDRANATH TAGORE

**THE GARDENER**

ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

ՀԱՄԼԻԿ ԹՈՒՄԱՆԵԱՆԻ

# ՌԱԲԻՆԴՐԱՆԱԹ ՏԱԳՕՐ

# ԵՐԿԵՐԻ ԺՈՂՈՎԱԾՈՒ

## *Ա. ԳԻՐՔ*

## *ՊԱՐՏԻԶՊԱՆԸ — ՊՕԷՄՆԵՐ*

*ԱՄԷՆ ԻՐԱՒՈՒՆՔ ՎԵՐԱՊԱՀՈՒԱԾ ԹԱՐԳՄԱՆՉԻՆ*

## ՌԱԲԻՆԴՐԱՆԱԹ ՏԱԳՕՐ

# ՊԱՐՏԻԶՊԱՆԸ

### ՍԻՐՈՅ ԵՒ ԿԵԱՆՔԻ ՊՕԷՄՆԵՐ

ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ ԱՆԳԼԻԵՐԷՆԻՑ

ՀԱՄԼԻԿ ԹՈՒՄԱՆԵԱՆԻ

---

ՎԻԷՆՆԱ ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ 1922

~~Armenian Collection~~

PK 7761 E9 T12

# ԱՌԱՋԱԲԱՆ

Մեծ մասը սիրոյ եւ կեանքի պօէմների, որոնց թարգմանութիւնը բենգալերէնից զետեղուած է էս հատորում՝ գրուած են աւելի վաղ քան կրօնական պօէմների էն շարքը, որ տպուել է "Գիտանժալի" (Յաշտերգեր) գրքիս մէջ:

Թարգմանութիւնները բառացի չեն՝ բնագիրները երբեմն կրճատուել են, տեղ-տեղ էլ ազատ թարգմանուել:

ՌԱԲԻՆԴՐԱՆԱԹ ՏԱԳՈՐ

# ԹԱՐԳՄԱՆՉԻ ԿՈՂՄԻՑ

*Ցոփացած ոսկու, մեքենաների հնչիւնից ու շառաչից, լիացած շռայլութեամբ ու զեխութեամբ անձնայրածիր կեանքով, յոգնած ու լքուած ռազմերի ու արիւնի մէջ՝ զզուած գնդակների տարափից Արեւմուտքը վերջապէս գալիս է նորից Մեծ եւ Իմաստուն Արեւելքի մօտ — մեղքերը քաւելու, սիրտը մաքրելու, հոգին սրբելու, միտքը պարզելու...*

*Արեւմուտքը դեռ շատ բան ունի սովորելու՝ հեռատես անվրէպ աչքով, անվրդով ու անբասիր սրտով, վեհ ամպաբերձ հոգով ու պայծառ, անշամանդաղ մտքով Արեւելքից:*

Դեռ տակավին չի՛ ցամքել արցունքը բիւր հազար մայրերի ու քոյրերի, չեն սթափւել բազում որբացած ընտանիքներ ու անտէր մնացած ծնողներ, չեն արթնացել էն շշմորից, էն ահռելի զարհուրան-քից, արհաւիրքից, որ ստեղծեց նրանց գլխին արիւ-նարբու Արեւմուտքը չորս տարուայ ընթացքում. փոթորիկ, որ մոլեգին ուժգնութեամբ սրբեց, տա-րաւ ամեն ինչ՝ եւ բարոյականութիւն, եւ սէր, եւ կուլտուրա, եւ գրականութիւն, եւ խաղաղութիւն եւ նոյն իսկ հաւատ ու յոյս:

Բայց մօտ է հսկայ վայրկեանը. էլ առաւել հուժկու թափով, աւելի հզօր ունակութեամբ քան կարող էր լինել առանց աննախընթաց եղբայրա-սպան համաշխարհային սպանդանոցի, աւելի կայ-տառ ու ժիր եռանդով նա, էդ մեծ, վիթխարի շունչը, մարդու հոգու եւ մտքի անխուսափելի ուղեցոյցը գալիս է սէր, խաղաղութիւն սերմա-նելու:

*Չ՚ցամքած արցունքն ու շարունակող ան-նորմալ պայմանները եւ „Ծսակյանութեան“ զօրա-ցած ուժն է, որ խանգարում են գրականութեան անդորրը ու մեծ աշխատանքին :*

*Արեւմուտքի մեծ քանաստեղծ ու փիլիսոփայ եւ Արեւելքի խորութեան, իմաստութեան մար-մնացում — Գանգէսի ափերի ամենակուլտուրական „սուրբ մարդու“ Ռաբինդրանաթ Տագորի առաջին հատորն առաջարկելով հայ հասարակութեանը՝ մենք սիրում ենք հաւատալ, որ մօտ ապագայում լոյս կ՚ընծայենք երկրորդ հատորը „Գիտանժալի“ — Յաշտերգերը հեղինակի կենսագրական եւ գրա-կան-փիլիսոփայական գործունէութեան ընդար-ձակ տեսութիւնով:*

*Լոնդոն, 1922 թ. Օգոստոս 18*

## I

### ԾԱՌԱՆ

*Ողորմած եղիր դէպի քո ծառան, տիրուհի՛:*

### ԹԱԳՈՒՀԻՆ

*Ընդունելութիւնը վերջացել է եւ իմ բոլոր ծառաները ցրուել են արդէն. ո՞ւր ես եկել էդքան ուշ:*

### ԾԱՌԱՆ

*Երբ բոլորը գնում են, էն ժամանակ է իմ հերթը գալիս. ուզում եմ խնդրել էն, ինչ որ մնում է դեռ քո վերջին ծառայի համար:*

### ԹԱԳՈՒՀԻՆ

*Ի՞նչ կարող ես սպասել, երբ էդքան ուշ ես եկել:*

ԺԱՌԱՆ

*Նշանակիր ինձ ծաղկոցիդ հսկիչ:*

ԹԱԳՈՒՀԻՆ

*Ի՞նչ անմտություն:*

ԺԱՌԱՆ

*Ես հրաժարվում եմ իմ բոլոր ծառայություն-ներից, տիրուհի:*

*Ես կ'թողնեմ իմ սուրն ու նիզակը: Մի ուղարկիր ինձ այլևս հեռու պալատներ, մի հրամայիր ինձ նոր յաղթություններ անելու:*

*Միայն քո ծաղկոցիդ հսկիչը նշանակիր ինձ:*

ԹԱԳՈՒՀԻՆ

*Բայց պարտականությունդ ինչ պիտի լինի:*

ԺԱՌԱՆ

*Պարապ օրերիդ կ'ծառայեմ, տիրուհի:*

*Ես կ'պահպանեմ թարմ կանաչը էն արահետի, ուր զբօսնում ես դու առաւօտեան ու քո ամեն մի քայլը մահ տենչող ծաղիկները օրհներգութեամբ կ'դիմաւորեն:*

Քեզ կօրօրեմ սապտապարնի ծիւղերի մէջ եւ իրիկւայ մահիկը կ'տենչի տերեւների արանքից զգեստիդ փէշը համբուրել:

Խնկաբոյր իւղով կ'լցնեմ անկողնիդ մօտ վառւող ճրագն ու ոտներիդ աթոռակը կ'զարդարեմ հրաշագեղ նկարներով՝ ճանտանի եւ շափրանի ներկից:

ԹԱԳՈՒՀԻՆ

Ու ի՞նչ վարձատրութիւն ես ուզում դրա համար:

ԾԱՌԱՆ

Որ ինձ թոյլ տաս՝ վերցնեմ փթթող լոտոսից էլ քնքոյշ ծեռներդ ու զարդարեմ ծաղկեայ ապարանջաններով, ներկեմ ոտերիդ կրունկները աշօկի ալ կարմիր հիւթով ու փոշու հատիկները, եթէ պատահմամբ կպչեն՝ քաղեմ համբոյրներով:

ԹԱԳՈՒՀԻՆ

Խնդիրդ կատարուած է, ծառաս, եղիր իմ ծաղկոցիս հսկիչը·

## II

*“Ա՜խ, երգիչ, տես, երեկոն մօտենում է, մազերդ ճերմակում են:*

*“Քո մենաւոր մտածմունքների ժամանակ չե՞ս լսում անդրշիրիմեան աշխարհի կոչը:”*

*“Այո, արդէն երկոյ է”—պատասխանեց երգիչը—“բայց ես դեռ ականջ եմ դնում, գուցէ գիւղից ինձ կանչող լինի՝ թէկուզ եւ ուշ է արդէն:*

*“Ես հետեւում եմ՝ չեն հանդիպում արդեօ՞ք իրար երկու մատաղ մոլորուած սրտեր ու երկու զոյգ փայլատակած սիրահար աչեր չե՞ն խնդրի իմ երգը, որ խանգարի նրանց լռութիւնն ու խօսի նրանց փոխարէն:*

*“Հապա ո՞վ պիտի նրանց համար կրքոտ երգեր հիւսի, եթէ ես նստեմ կեանքի ափին ու դիտեմ մահն ու անդրշիրիմեան աշխարհը:*

*Իրիկուայ վաղորդեան աստղիկը չքանում է:*

“Մարում է կամաց յուղարկաւորութեան խա-
րոյկն անշշուկ գետի էն ափին:

“Գունատւող լուսնի տակ շնագայլերի վոհմակը
ոռնում է քանդուած տան բակում:

“Եթէ իր տունը թողած ճամբորդի մինը գայ էստեղ
գիշերով՝ գլխիկոր ունկընդրելու խաւարի շշուկը, ո՞վ
պիտի նրա ականջին շշնջայ կեանքի գաղտնիքները,
եթէ ես փակեմ դռներս ու մտածեմ մահի կապանք-
ներից ազատուելու մասին:

“Ի՞նչ փոյթ, որ մազերս ճերմակում են:

“Ես միշտ նոյնքան ջահէլ եմ եւ նոյնքան ծեր,
ինչքան էս գիւղի ամենաջահէլն ու ամենածերը:

“Ոմանք ժպտում են պարզ ու քնքոյշ, միւսների
աչքերը կայծում են խորամանկօրէն:

“Ոմանց արցունքը ցայտում է ցերեկւայ լուսին,
միւսների արցունքը թափւում է խաւարում:

“Ես պէտք եմ ամենքին, եւ ժամանակ չունեմ
ապագայ կեանքի մասին մտածելու:

“Ես հասակակից եմ ամեն մէկին, էլ ի՞նչ փոյթ,
որ իմ մազերս ճերմակում են·„

## III

*Մի առավոտ ուռկանս ծովը ձգեցի:*

*Խավար ու խոր անդընդից ես դուրս հանեցի տեսքով աննման ու սքանչելի գեղեցկության իրեր, — մի քանիսը փայլում էին ժպիտի պես, մի քանիսը շող-շողում էին արցունքի պես, մյուսները կարմրին էին տալիս նորահարսի այտերի նման:*

*Երբ բեռս տուն բերի՝ իմ նազելիս այգում նստած ծույլ-ծույլ պոկում էր թերթիկները ծաղկի:*

*Մի րոպէ տատանուեցի — յետոյ դրի նրա ոտների տակ իմ ամբողջ որսն ու լուռ կանգնեցի:*

*Նա նայեց ու շշնջաց՝*

*— Սա ինչ տարօրինակ բաներ են. ես չը գիտեմ ինչի են պէտք գալու սրանք:*

*Ամօթից գլուխս կախեցի ու մտածեցի՝ — ճիշտ որ սրանք յարմար նուէրներ չեն նրա համար. չէ՞ որ կռւով չեմ խլել թշնամուց եւ ոչ էլ շուկայում եմ գնել:*

*Ու ամբողջ գիշեր իմ նուէրները մէկը միւսի ետեւից փողոց նետեցի:*

*Առաւօտը ճամբորդներ եկան, հաւաքեցին ու տարան հեռու երկիրներ:*

## IV

*Վա՜յ ինձ, ո՛րտեղ է տունս՝ աղմկոտ շուկայի ճամբին:*

*Ամենքը իմ ծառերի մոտ են կապում բեռնած նաւերը:*

*Ամենքը, ում քէֆը տալիս է, գնում են գալիս՝ ազատ անց կենում:*

*Ես նստած հետեւում եմ նրանց ու ժամանակս անցնում է:*

*Ես չեմ կարող նրանց վռնդել ու օրերս անցնում են էսպէս:*

*Գիշեր ցերեկ նրանց ոտնաձայնն է իմ դռան մոտ:*

*Իզուր եմ գոռում՝ “Ես ձեզ չեմ ճանաչում„:*

Նրանցից ոմանք ծանօթ են մատներիս, ոմանք հոտառութեանս, երակներիս արիւնը կարծես ճանաչում է միւսներին, ոմանք էլ ծանօթ են երազներիս:

Ես չեմ կարող նրանց վռնդել. ես կանչում եմ նրանց ու խնդրում՝ “Եկէք ինձ մօտ. Համեցէք, ով ուզում է, եկէք„:

Առաւօտեան ղօղանջում են զանգերը տաճարի:

Նրանք գալիս են կողովները ձեռքին: Կարմիր են նրանց ոտները վարդի պէս: Դէմքերին խաղում է արշալոյսի շողն առաջին:

Ես չեմ կարող նրանց վռնդել: Ես կանչում եմ նրանց ու խնդրում՝ “Եկէք իմ պարտէզը ծաղիկ քաղելու, եկէք ինձ մօտ„:

Կէսօրին հնչում է գոնգը պալատի դարպասի մօտ:

*Չգիտեմ ինչու բոլորը թողնում են իրենց գործն ու հաւաքւում իմ պատի տակ:*

*Նրանց վարսերին ծաղիկները թօշնած են ու տժգոյն. Նրանց սրինգների ձայնը նւաղած:*

*Ես չեմ կարող նրանց վռնդել: Կանչում եմ նրանց ու խնդրում՝ “Հով է իմ ծառերի շւաքի տակ, եկէք, բարեկամներ,,:*

*Գիշերը ծղրիդները ծղրտում են անտառում:*

*Էն ո՞վ է էդպէս կամաց մօտենում իմ դռանն ու զգոյշ բախում:*

*Հազիւ եմ դէմքը նշմարում. ոչ մի ծպտուն շուրջս լռութիւն է երկնային:*

*Ես չեմ կարող վռնդել իմ անխօս հիւրին:*

*Խաւարի միջից նայում եմ նրա դէմքին ու անցնում են ժամերն երազի:*

# V

*Ես հանգիստ չունեմ: Կարօտ եմ էն բանին, որ հեռու է:*

*Հոգիս մորմոքում է աղջամղջոյր հեռուների թեկուզ եզերքին դիպչելու փափագով:*

*Օ՜, Վսեմ Անդրաշխարհային Հեռու, օ՛, զիլ կանչը քո սրնգի:*

*Ա՛խ, մոռացայ, ես միշտ մոռանում եմ, որ թեւեր չունեմ թռիչքի համար, որ առյաւէտ բանտարկւած եմ էստեղ:*

*Անհամբերութիւնից ես այրւում եմ, քուն չունեմ. ես օտարական եմ էստեղ՝ օտար երկրում:*

*Քո շունչը շուակի հասնում է ինձ ու ներշնչում անհնարին յոյսեր:*

Քո լեզուդ մօտ է սրտիս՝ որպէս իմը:

Օ՜, Դու, Հեռաւոր Բաղձալի Որոնում, օ՜, զիլ կանչը քո սրնգի:

Ա՜խ, մոռացայ, ես միշտ մոռանում եմ, որ անծանօթ եմ էնտեղի ճամբին, որ չունեմ թեւաւոր ձի:

Մոլորուել եմ ես. օտար եմ ես իմ իսկ սրտում:

Տառապանքի ժամին, արեւի թխպոտ քօղի մէջ, դու Հսկայ տեսիլքի պէս ելնում ես երկնքի լազուրը...

Օ՜, Հեռաւորագոյն Նպատակ, օ՜, զիլ կանչը քո սրնգի:

Ա՜խ, մոռացայ, ես միշտ մոռանում եմ, որ փակ են բոլոր դռները էն տան, որտեղ ես ապրում եմ մենակ:

# VI

Սենեակի վանդակում տանջւում էր բանտարկւած թռչունը՝ ազատը ճախրում էր անտառում:

Հասաւ ժամն ու նրանք հանդիպեցին իրար: Էդպէս էր ճակատագրի հրամանը:

— Ե՛կ, սիրելիս, միասին թռչենք անտառ — կանչում է ազատ թռչունը:

— Արի ինձ մօտ, էս վանդակում ապրենք միասին — ծլւծլում է վանդակի գերին:

— Ձողապատ քո վանդակում թեւերն իսկ շտկել անհնար է -- պատասխանում է թռչունն անտառի:

— Ա՜խ, ծլւում է վանդակի գերին, երկնքում ծող չկայ ինձ համար, որ նստեմ:

— Երգիր, սիրելիս, անտառի երգերից — աղաչում է ազատ թռչունը:

— Նստիր իմ կողքիս՝ ես կ՚սովորեցնեմ քեզ երգել էնպէս՝ ինչպէս ինձ են սովորեցրել — պատասխանում է վանդակի գերին:

— Ա՛խ, ոչ, ոչ, երբէք չի կարելի սովորելով երգել — ճչում է անտառի թռչունը:

— Վա՜յ ինձ, ես անտառի երգերը չգիտեմ — ծըւում է գերին:

Անհամբեր կրքից բոցավառւում է նրանց սէրը, բայց թեւ թեւի նրանք երբէք չեն թռչելու:

Ու նայում են միմեանց թռչունները վանդակի ձողերի արանքից՝ բայց զուր են աշխատում հասկանալ իրար:

Տագնապալի, կրքոտ տենչով թրթռում են նրանք, թեւերը թպրտալով հառաչում են՝ “աւելի մօտ, սիրելիս, մօտ եկ„:

— Անհնար է, վախում եմ քո վանդակի փակ դռներից — ախ է քաշում թռչունն անտառի:

Ու ցաւով ծըւում է վանդակի գերին՝

— Աւա՜ղ. թեւերս ուժասպառ են ու մեռած:„

## VII

Ես ինչպէս կարող եմ էս առաւօտ աշխատել, մայրիկ, երիտասարդ Իշխանը պիտի անցնի մեր դռան մօտից:

Ասա՛, ինչպէս յարդարեմ վարսերս, ո՞ր զգեստս հագնեմ:

Մի՛ նայիր, մայրիկ, ինձ էդպէս զարմանքով:

Ես լաւ գիտեմ՝ նա հայեացք էլ չի ձգի պատուհանիս, մի ակնթարթում կանհետանայ աչքից. միայն սրինգների նուաղուտ երգը հառաչով կ'լսուի հեռուից

Բայց, մայրիկ, երիտասարդ Իշխանը կանցնի մեր դռան մօտից՝ ես կ'հագնեմ ամենալաւ զգեստս:

Մայրիկ, երիտասարդ Իշխանը անցաւ մեր դռան մօտից ու վաղորդեան շողերով ողողուած փայլում էր նրա կառքը գեղաշուք:

Ես ձգեցի դէմքիս քօղը, պոկեցի վզիս սուտակի մանեակն ու նետեցի ճամբէն՝ նրա առաջ:

Մի՛ նայի ինձ էդպէս զարմանքով, մայրիկ:

Ես գիտեմ, չվերցրեց մանեակը. նա ընկաւ անիւների տակ եւ միայն կարմիր բիծ մնաց ճամբում. ոչ ոք չը գիտէ, որ նրա համար նետեցի էս նուէրը:

Սակայն երիտասարդ իշխանն անցաւ մեր դռան մօտից ու իմ գանձը կրծքիցս ես նրա ոտների տակ նետեցի:

## VIII

Ես զարթնեցի այգուն կանուխ՝ հէնց առաջին հաւքերի հետ, երբ անկողնիս մօտ ճրագը հանգաւ:

Նստեցի բաց պատուհանիս առաջ թափած վարսերով՝ թարմ ապարօշը գլխիս:

Առաւօտեան վարդազօծ աղջամուղջին՝ անցնում էր մօտ ճամբով ջահէլ ճամբորդը:

Նա վզին մարգարտէ մանեակ ունէր եւ արեւի շողերով շառափում էր նրա պսակը արփիագեղ: Իմ դրան մօտ կանգ առաւ նա եւ կրքոտ հարցրեց՝ “ո՞ւր է նա„:

Օ, ամօթ, չկարողացայ ասել՝ “Նա-ես եմ, ջահէլ ճամբորդ, նա-ես եմ„:

Իրիկնամուտ էր, ճրագը չէր վառած:
Մոռացութեան մէջ մազերս էի հիւսում:

Մայր մտնող արեւի վերջին ճառագայթների
արոյր շողերին՝ հառաչակուլ մօտեցաւ գեղազան կառ-
քով չահէլ ճամբորդը:

Փրփուր էր խփում ձիաների երախից ու փոշոտ
էր նրա հագուստն ամբողջ:

Իմ դռան մօտ նա իջաւ կառքից եւ յոգնած ու
վհատ հարցրեց թոյլ ձայնով՝ "ո՞ւր է նա„:

Օ, ամօթ, չկարողացայ ասել — "նա՝ ես եմ,
յոգնած ճամբորդ, նա՝ ես եմ„:

Ահա գիշերն ապրիլի: Ճրագն այրւում է իմ սե-
նեակում:

Մեղմ փչում է հարաւի շունչը: Ճւճւող խօսնակ
թութակը քնած է իր վանդակում:

Բազմերանգ է զգեստս, որպէս խատուտիկ վիզը սի-
րամարգի ու ծածկոցս կանաչ, ինչպէս սէզը ցողաթուրմ:

Ես նստած եմ յատակի վրայ պատուհանիս մօտ
ու դիտում եմ դատարկ ճամբան:

Ու ամբողջ մառ գիշեր ես շշնջում եմ ինձ ու ինձ
ու անվերջ փսփսում "նա-ես եմ, յուսահատ ճամբորդ.
նա-ես եմ„:

## IX

*Գիշերը՝ երբ ես մենակ գնում եմ ժամադրու-
թյան — քամին չի շչում, թռչունները չեն երգում.
կանգնած են տները ճամփու ափերին լռության մեջ:*

*Միշտ իմ ոտքերիս ապարանջաններն են, որ
ամեն քայլափոխում զնգում են և ես ամաչում եմ:*

*Երբ ես նստում եմ իմ պատշգամբում ու լռո-
ղությունս հսկում է նրա քայլերի ձայնին, ծառ ու տերև
չեն սոսում, գետի ջուրը լուռ է ու անշարժ ինչպես
թուրը քնած պահակի ծնկներին:*

*Միշտ իմ սիրտս է, որ խելառ բաբախում է,
ինչպես հանգստացնեմ նրան — չգիտեմ:*

*Երբ գալիս է սիրելիս ու նստում կողքիս՝ թրթռում է սիրտս, աչերս կախ են ընկնում. խաւարտչին է դառնում գիշերը. քամին մարում է ճրագն ու ամպերը շղարշով սքողում են աստղերին:*

*Միշտ իմ կրծքիս արփիացայտ գոհար քարն է, որ լոյս է նշուլում ու այրում կուրծքս, ի՞նչպէս թագցնեմ նրան — չգիտեմ:*

## X

Թող գործդ, հարս, տես, հիւր է եկել:

Լսո՞ւմ ես՝ ինչ զգուշութեամբ նա շարժում է դռան փակը:

Տես, չը լինի թէ նրան դիմաւորելիս ոտներիդ օղերը զնգան կամ քայլուածքդ շտապ ու շփոթ լինի:

Թո՛ղ գործդ, հա՛րս, հիւր է եկել իրիկուայ ժամին:

Մի՛ վախի, հա՛րս, էդ չար քամու շունչը չէ. դա լրիւ լուսինն է ապրիլ գիշերուայ: Գունատ են ստուերները բակում ու պայծառ է պարզ երկինքը մեր գլխին:

Վերցրու քօղըդ՝ թէ երեսդ ես քաշելու. ճրագով մօտեցիր դռանը՝ եթէ վախում ես:

Մի՛ վախի, հա՛րս, էն չար քամու շունչը չէ:

*Չէն մի հանի, եթէ ամաչում ես, նրան ընդու-նելիս դռան մի կողմը կաց: Եթէ նա քեզ բան հարցնի՝ դու ուզես-կարող ես լուռ աչքերդ կախ գցել:*

*Տես, օղակներդ չզնգան՝ երբ ճրագը ձեռիդ նրան ներս հրաւիրես: Հետը մի՛ խօսա, եթէ ամաչում ես:*

*Չ'վերջացրի՞ր քո գործը, հա՛րս: Տե՞ս, ա՛յ հիւրը:*

*Միթէ գոմի ճրագը չես վառել:*

*Դեռ չե՞ս պատրաստել զոհաբերութեան զամ-բիւղն իրիկուայ ծիսակատարութեան համար:*

*Խորե՞լ ես վարսերիդ սանրուածքում կարմիր նշանը բախտի. հագնուա՞ծ ես գիշերուայ համար:*

*Օ, հարս, լսո՞ւմ ես, հիւրը եկել է:*

*Թո՛ղ գործերդ:*

## XI

Ե՛կ, ինչպէս որ կաս, էլ ժամանակ մի կորցնի զուքւելուդ վրայ: Թող լինես հերարձակ — թափուած վարսերով՝ թող սանրուածքդ լինի անկարգ ու կորսաժիդ ժապաւէնները քանդած՝ ինչ փոյթ:

Ե՛կ ինչպէս որ կաս, էլ ժամանակ մի կորցնի զուքւելուդ վրայ:

Արի՛ կանաչներով, արի՛, շտապիր:

Թող սէզերի ցողը քո երանգանկար ոտերիդ ներկը իջեցնի կամ թէկուզ ոտերիդ բոժոժիկների օղակները բացւեն ու մանեակիդ մարգարիտները թափւեն՝ ուշ մի դարձնի:

Արի՛ կանաչներով, արի՛, շտապիր:

*Տեսնո՞ւմ ես ամպերը ինչպէս են ծածկում եր-կինքը:*

*Հեռաւոր ծովի ծանծաղուտից կռունկների երամն իջել է գետափին ու քմահաճ քամին բարկ ուժգնու-թեամբ սլանում է դաշտի վրայով:*

*Նախիրը խրտնած դէպի գիւղի ախոռներն է վազում:*

*Տեսնո՞ւմ ես՝ ամպերը ինչպէս են ծածկում եր-կինքը:*

*Դու զուր ես վառում սեղանիդ փոքրիկ ճրագը — բոցը կերերայ ու քամին կ՚մարի:*

*Եւ ո՞վ կ՚նկատի, որ քո արտեւանունքները չեն մրոտուել ճրագի մարած պատրոյգից: Չէ՞ որ ծաւի աչերդ աւելի թուխ են, քան ամպերը փո-թորկի:*

*Զուր ես վառում սեղանիդ փոքրիկ ճրագը՝ բոցը կերերայ ու քամին կը մարի:*

*Ե՛կ, ինչպէս որ կաս, էլ ժամանակ մի կորցնի հագնուելու վրայ:*

*Հոգ չէ, որ պսակը չի հիւսած կամ՝ ապարանջանի շղթան չի կապւում — թող էղպէս մնա:*

*Երկիրը բոլորովին ծածկուել է ամպերով՝ ուշ է արդէն: Ե՛կ ինչպէս որ կաս, էլ ժամանակ մի՛ կորցնի զուգուելուդ վրայ:*

## XII

*Եթէ օրուայ հոգսերից ժամին ուզես լցնել քո սափորը՝ արի, իմ լճակի մօտ արի:*

*Ջրի ալիքները կ'գրկեն ոտներդ ու թոթովելով իրենց գաղտնիքը կ'պատմեն քեզ:*

*Ցորդ անձրեւի ստուերն ընկել է աւազներին եւ ամպերը մառ կախուել են ծառերի գլխին՝ ճիշտ էնպէս, ինչպէս գոռւզ վարսերից պուրակները քո աչերից վրայ:*

*Ես շա՛տ լաւ գիտեմ քո քայլերից չափը – սիրտս զարկում է նրանց հետ համաչափ:*

*Արի, օ, ա՛րի իմ լճակի մօտ, եթէ սափորդ լցնել ես ուզում:*

*Եթէ ուզում ես լինել պարապ՝ սափորդ գցես լիճը, որ լողայ ու ինքդ էլ նստես ափին՝ անհոգ ու անդարդ՝ արի, արի եմ լճակի մօտ:*

*Սիզաքեր լանջերը կորած են կանաչների մէջ, իսկ դաշտի ծաղկունք թիւ-համար չունին:*

*Քո թուխ ծաւի աչերից դուրս կ՚ճախրեն հոգսերդ՝ ինչպէս թռչունները բներից:*

*Ու շղարշէ ծածկոցդ կընկնի ոտներիդ:*

*Արի, օ, արի իմ լճակի մօտ, եթէ ուզում ես պարապ նստել:*

*Երբ յոգնած քո խաղերից ուզենաս ջուրը սուզուել՝ եկ, եկ իմ լճակիս մօտ:*

*Թող քո կապուտ շղարշը մնայ աւազի վրայ:*

*Կապուտ ջրերը քեզ կ՚սքօղեն ու կ՚ծածկեն: Վերնաճեմ ալիքները կ՚բարձրանան վիզդ համբուրելու եւ ականջիդ թաքուն խօսքեր շշնջալու:*

*Եկ, օ՜, եկ իմ լճակիս մօտ, երբ ուզենաս ջուրը սուզուել:*

Եթէ յանկարծ ցնորուես ու վազես դէպի մահը՝ արի, արի իմ լճակիս մօտ:

Զով է նա, անդնդախոր ու անհուն։

Մթին է, մռայլ՝ աներազ քնի պէս:

Ընտեղ՝ նրա անդունդում գիշեր ցերեկ մին է, իսկ երգերը՝ լռութիւն:

Ե՛կ, եկ իմ լճակիս մօտ, եթէ դու մահուան գիրկն ընկնելու լինես:

## XIII

Ես ոչինչ չ՚խնդրեցի. միայն անտառի մօտ՝ ծառի ետեւում կանգնած էի:

Աղջամուղջը չէր անցել. արշալոյսի աչերում երեւում էր դեռ օրուայ խոնջութիւնը եւ օդը խոնաւ էր տակաւին:

Ճաղոտ սէզերի ծոյլ բոյրը շիթ առ շիթ կախ էր ընկած նուրբ մշուշի մէջ՝ երկրի վրայ:

Կարագի պէս քնքոյշ ու թարմ ձեռներով դու կով էիր կթում քանանի ծառի տակ:

Ու ես անշարժ դեռ կանգնած էի:

Ես ծպտուն չ՚հանեցի: Էն անտես հաւքն էր երգում ծմակում:

*Մանզոստէնի ծառը սփռել էր իր ծաղիկները գիւղի ճամբին ու մեղուները խաժամուժ մէկը միւսի ետեւից բզզալով սլանում էին։*

*Լճի մօտ Շիվայի տաճարի դարպասները բաց-ւեցին ու երկրպագուն սկսեց կարդալ իր աղօթքները։*

*Կովկիթը ծնկներիդ մէջ բռնած դու կով էիր կթում։*

*Ես կանգնած էի իմ դատարկ թասով։*

*Եւ առաջ չեկայ՝ չմօտեցայ քեզ։*

*Երկինքը զարթեց տաճարի գոնգի ձայնից։*

*Հօտն արօտ քշեցին ու փոշին ելաւ ճամբու վրայ։*

*Ուսից վերադարձան կանայք կլկլացող սափոր-ները ազդրերին բռնած։*

*Քո ապարանջանները զնգացին ու կովկիթի ափերն ելաւ փրփուրը ծիւնաթոյր։*

*Առաւօտն անցաւ, իսկ ես քեզ չմօտեցայ։*

# XIV

*Թէպէտ եւ կէսօրն անց էր ու բամբուկի ճիւղերն աղմկում էին քամուց՝ չգիտեմ ինչու ես քայլում էի ճամբով:*

*Թեքւող ստուերներն իրենց երկար թեւերը պարզելով՝ փախչող լոյսի ոտներն էին ընկնում:*

*Քեօյլիները յոգնել են երգելուց:*

*Ես քայլում էի ճամբով — ինքս էլ չգիտեմ՝ ինչու:*

*Սաղարթախիտ ծառի հովանու տակ գետի ափին է խրճիթը:*

*Մի ինչ որ կին զբաղուած է իր գործով ու նրա ապարանջանների զնգոցը երաժշտութեամբ էր լցրել էդ անկիւնը:*

*Ես կանգ առայ էդ խրճիթի մօտ՝ ինքս էլ չգիտեմ — ինչու:*

*Էս նեղ օձապտոյտ ճամբան կտրում է մանա-նեխի անթիւ դաշտեր ու մանգօի անհամար պուրակներ:*

*Նա անցնում է գիւղի տաճարի եւ գետափնեայ շուկայի կողքով:*

*Ես կանգ առայ էդ խրճիթի մօտ — ինքս էլ չգիտեմ՞ ինչու·*

*Տարիներ առաջ մարտի հողմաշունչ մի օր գար-նան թոթովանքը թախծոտ էր ու մանգօի ծաղկունք թափւում էին փոշոտ գետնին:*

*Ծփծփուն ջուրը յորձանքով ծառս էր լինում ու լի-զում գետափի սանդուխտի վրայ մոռացւած պղնձէ ամանը:*

*Ես մտածում էի էդ օրւայ՝ մարտի հողմավար օրւայ մասին — ինքս էլ չ՚գիտեմ՝ ինչու:*

*Ստւերները խորանում են ու նախիրը տուն է դառնում:*

*Մենակ դաշտերում գորշացաւ լոյսն ու գիւղա-ցիները գետափին սպասում են լաստանաւին:*

*Հանդարտ, կամացուկ ես տուն եմ դառնում — ինքս էլ չ՚գիտեմ՝ ինչու:*

## XV

*Վազում եմ՝ ինչպես մթին ծմակում սլացող մշկեղջերուն իր բույրից խելքամաղ եղած:*

*Ես գիշերը՝ ծաղկափթիթ միջմայիսեան գիշեր է, իսկ թեթեւ քամին՝ հարաւի զեփիւռը:*

*Ես կորցնում եմ ճամբէն՝ շւար մոլորւում. փնտրում եմ էն, որ չեմ գտնի ու գտնում եմ էն, որ չեմ փնտրում:*

*Իմ էս ցանկութիւնս դուրս է թռչում սրտիս խորքիցն ու կաքաւում իմ առաջ:*

*Ճախրում է շողացող տեսիլը:*

*Ես ուզում եմ սեղմել նրան գրկիս, իսկ նա խուսափում է ու շեղում ինձ ճամբից:*

*Փնտրում եմ էն՝ որ չեմ գտնի, ու գտնում եմ էն՝ որ չեմ փնտրում:*

## XVI

*Ձեռները դիպչում են ձեռներին, աչերը սուզ-ւում աչերում՝ էսպէս է սկսւում մեր սրտերի պատ-մութիւնը:*

*Մարտի գիշերը ողողուած է լուսնի լուսով, օդը հարբած խէնն ու անուշ բուրմունքից, իմ սրինգը ընկած է գետնին, իսկ քո ծաղկեայ ապարօշը դեռ չի հիւսւած:*

*Իմ ու քո մէջ սէրը պարզ է երգի պէս:*

*Քո քրքումի ծածկոցն արբեցնում է իմ աչքերը:*

*Յասմիկի պսակը, որ դու հիւսել ես ինձ համար՝ որպէս զովք ու մեծարանք՝ թրթռեցնում է սիրտս:*

*Դա խաղ է, մերձեցման ու խուսափման, յան-կարծ շողացող ու կրկին չքացող խաղ, թեթեւ ժպիտի*

*ու թոյլ երկչոտութեան՝ մի ապարդիւն, մեղուշ պայքար:*

*Իմ ու քո մէջ սէրը պարզ է երգի պէս:*

*Չկայ ոչ մի զաղտնիքներկայից դուրս, ոչ մի թիռ անհասանելուն, ոչ ստուեր թաղնուած հիացմունքի ետեւում եւ ոչ էլ թափառումներ՝ խաւարի խորքերում:*

*Իմ ու քո մէջ սէրը պարզ է երգի պէս:*

*Խօսքերից մենք չենք անցնում յաւերժ լռութեան ու դատարկութեան մէջ ձեռքներս չենք մեկնում էն բանին, որից յոյս չ'կայ:*

*Էն, ինչ որ տալիս ենք ու ստանում, էն էլ մեզ հերիք է: Մենք վայելքի ժամին հրճւանքից լիացած չ'մօտեցանք վերջին սահմանին, որ տառապանքի գինին չ'ցայտէր:*

*Իմ ու քո մէջ սէրը պարզ է երգի պէս:*

## XVII

*Երգում է դեղին թռչունը նրանց ծառի վրայ ու ստիպում է՝ սիրտս կաքաւի հաճոյքից:*

*Երկուսս էլ ապրում ենք մի գիւղում եւ դա է բախտի մեր բաժինը:*

*Նրա սիրած երկու գառնուկները գալիս են մեր այգին՝ ծառերի շուաքի տակ արածում:*

*Երբ նրանք ընկնում են մեր գարու արտը՝ ես նրանց գիրկս եմ առնում:*

*Մեր գիւղին ասում են Քանջանա, մեր գետը կոչւում է Անջանա:*

*Ոնց են ինձ կանչում՝ գիտէ ողջ գիւղը, իսկ նրա անունն է Ռանջանա:*

Մեր տնից նրանց տուն՝ մի արտ է միայն:

Մեղուները, որ պարսել են մեր ծառերին՝ մեղրը հաւաքում են նրանց պուրակում:

Նրանց կամրջից ջուրն ընկած ծաղիկները գետի հոսանքը բերում է էն կողմը՝ ուր մենք ենք լողանում:

Նրանց դաշտերից կիւսմայի չորացրած ծաղիկ-ները կողովներով վաճառում են մեր շուկայում:

Մեր գիւղին ասում են Քանջանա, մեր գետը կոչւում է Անջանա:

Ոնց են ինձ կանչում՝ գիտէ ողջ գիւղը, իսկ նրա անունն է Ռանջանա:

Նրանց տուն վազող կածանը Մանգօի ծաղկունք է բուրում գարնանը:

Երբ նրանց վուշը հասնում է հնձելուն՝ մեր դաշտում կանեփն է ծաղկում:

Աստղերը, որ ժպտում են նրանց տնակին՝ նոյն առկայծումն էլ մեզ են ղրկում:

*Անձրեւը, որ նրանց ջրամբարներն է լցնում՝ մեր կաղամի անտառին հրճւանք է բերում:*

*Մեր գիւղին ասում են Քանջանա, մեր գետը կոչւում է Անջանա:*

*Ոնց են ինձ կանչում՝ գիտէ ողջ գիւղը, իսկ նրա անունն է Ռանջանա:*

## XVIII

*Երբ երկու քույր գնում են ջրի՝ նրանք ժպտալով են մոտենում էս տեղին:*

*Երևի նրանք գիտեն, որ ամեն անգամ մեկը լուռ կանգնած է ծառերի ետևը՝ երբ իրենք ջրի են գնում:*

*Ու երկու քույր փսփսում են իրար մեջ՝ երբ էս տեղը անցնում են:*

*Երևի նրանք իմացել են էն մարդու գաղտնիքը, որ ամեն անգամ լուռ կանգնած է ծառերի ետևը՝ երբ իրենք ջրի են գնում:*

*Յանկարծ թեքւում են նրանց սափորներն ու ջուրը թափւում է՝ երբ նրանք հասնում են էս տեղին:*

Երեւի գլխի ընկան նրանք, որ ուժգին է բաբախում էն մարդու սիրտը, որ ամէն անգամ լուռ կանգնած է ծառերի ետեւը՝ երբ իրենք ջրի են գնում:

Ու երկու քոյր նայում են իրար ու ծիծաղում՝ երբ մօտենում են էս տեղին:

Նոյն ծիծաղն է լսւում նրանց արագընթաց քայլերում եւ ամեն ինչ տակն ու վրայ է անում էն մարդու գլխում, որ ամեն անգամ լուռ կանգնած է ծառերի ետեւը՝ երբ իրենք ջրի են գնում:

## XIX

*Դու անցնում էիր գետափնյա շաւիղով լիքը սափորըն ազդրիդ:*

*Ի՞նչու դու յանկարծ արագօրէն շուռ եկար ու հայեացք նետեցիր ինձ վրայ քո ծածանուող ծածկոցիդ արանքից:*

*Մթան միջից շողշողացող էդ հայեացքը հասաւ ինձ էն զեփիւռի նման, որ սարսուռ է առաջ բերում ու ծփանքով ծածկելով ջուրը՝ կորչում է ափերի ստւերներում:*

*Նա հասաւ ինձ, որպէս գիշերւայ թռչունը, որ յանկարծ մութ սենեակ ընկնելով մի լուսամուտից՝ միւսից իսկոյն դուրս է սլանում շեշտակի ու կորչում գիշերւայ մէջ:*

*Դու թաքնուած ես աստղի պէս բլուրների ետեւ-ում, իսկ ես անցորդ — ճամբու վրայ:*

*Բայց ինչու դու մի վայրկեան կանգ առար ու ծածկոցիդ արանքից ակնարկ նետեցիր՝ երբ անցնում էիր գետափնեայ շաւիղով լիքը սափորն ազդրիդ:*

## XX

Ամեն օր նա գալիս է ու գնում հեռու: Ընկե՛ր, գնա եւ իմ վարսերից ծաղիկ տուր նրան:

Եթե նա հարցնի՝ ո՞վ է ուղարկել, աղաչում եմ, չ'տաս իմ անունը, չէ՞ որ նա միայն գալիս է ու գնում հեռու:

Նա նստում է ծառի տակ՝ գետնին: Ընկեր, փռիր էնտեղ անկողին ծաղիկներից ու տերեւներից:

Նրա աչերը թախծոտ են ու թախիծ են բերում սրտիս:

Թե ինչ կայ իր հոգում՝ չի ասիլ. Նա միայն գալիս է ու գնում հեռու:

## XXI

Ի՞նչ է մտածել էս պատանի օտարականը, որ վաղ լուսաբացին իմ դուռն է եկել:

Ներս ու դուրս անելիս՝ ես անցնում եմ նրա մոտով ու չեմ կարողանում աչքս հեռացնել նրա դէմքից:

Խոսե՞մ նրա հետ, թէ լուռ կենամ՝ չգիտեմ:

Ի՞նչ է մտածել սա, որ իմ դուռն է եկել:

Մռայլ են ամպոտ գիշերները յուլիսի. գունատ է լազուր երկինքը աշնան, գարնան օրերը հանգիստ չունեն հարաւի քամուց:

Եւ նրա երգերը հնչում են միշտ նոր եղանակով:

Ես թողնում եմ աշխատանքս ու մառախուղը մթեցնում, շշմորում է աչերս:

Ի՞նչ է մտածել սա, որ իմ դուռն է եկել:

## XXII

Երբ նա շտապ քայլերով անցաւ իմ կողքից՝ զգեստի ծայրը շոյեց ինձ:

Փչեց յանկարծ գարնան տաք շունչը հոգու անծանօթ կղզուց:

Դողացող ու թռվռուն շոյումի երերող ալիքն անցաւ իմ մարմնով ու չքացաւ վայրկենապէս՝ ինչպէս քամու քերանն ընկած ծաղկի թերթիկ:

Նա սիրտս մտաւ՝ որպէս թրթիռը նրա մարմնի, որպէս շշնջիւնը նրա սրտի:

# XXIII

Ինչ ես նստել էստեղ ու ապարանջաններդ զնգացնում հեզ ու պարապ խաղ անելով:

Լցրու սափորդ: Տուն գնալուդ ժամանակն է:

Ի՞նչ ես ձեռքերով ջուրը ճղոփում ու մէկ էլ ընդհատելով՝ չեշտակի հայեացք ձգում ճամբու վրայ. ո՞ւմն ես սպասում հեզ ու պարապ խաղ անելով:

Լցրու սափորդ. գնա՛ տուն:

Առաւօտի ժամերն անցնում են ու հոսում է ջուրը պղտոր:

Ալիքները ծիծաղում են ու շշնջում իրար հեզ ու պարապ խաղ անելով:

*Ընտեղ՝ երկնքի ափին — հեռու մարգագետնի վրայ կուտակւել են թափառական ամպերը:*

*Նրանք կանգ են առել, նայում են դէմքիդ ու ժպտում հեզ ու պարապ խաղ անելով:*

*Լցրո՛ւ սափորդ. գնա՛ տուն:*

## XXIV

*Մի ծածկիր սրտիդ գաղտնիքը, մտերիմ ընկեր: Յայտնիր ինձ, թաքուն միայն ինձ ասա:*

*Չէ որ դու ժպտում ես լուռ ու մեղմանուշ՝ ասա ինձ էլ շշնջալով կամացուկ՝ սիրտս կ'լսի եւ ոչ ականջներս:*

*Գիշեր է խորն ու խաւարտչին, տունն անձայն, Հաւքերի բները ընկղմուած քնի մէջ՝ պարուրուած երազով:*

*Յայտնիր ինձ, քո զսպած արցունքներով ու ժպիտով, քո մեղուշ ամօթով ու ցաւով պատմիր ինձ սրտիդ գաղտնիքը, մտերիմ ընկեր:*

## XXV

— Մօտ եկ, պատանի, ճիշտն ասա մեզ, ինչո՞ւ են աչքերդ խառնուած:

— Չգիտեմ էն ի՞նչ գինի էր վայրի կակաչից պատրաստած, որ ես խմեցի. նրանից է աչքերս խառնուել:

— Օ, ամօթ:

— Ի՞նչ անենք. մարդ կայ իմաստուն է, մարդ կայ՝ հասարակ. մարդ կայ զգոյշ է, մարդ կայ եւ անհոգ: Աչեր կան ժպտուն, աչեր կան լալկան — բայց իմոնք խառնուած են:

•

*— Պատանի. ինչո՞ւ ես անշարժ կանգնել ծառի շուաքում:*

*— Ուժասպառ են լինում ոտքերս սրտիս ծանրութեան տակ, ահա եւ կանգնած եմ ես անշարժ — ստուերում:*

*— Օ, ամօթ:*

*— Ի՞նչ անենք, որն առաջ է գնում, որը՝ ետ մնում. ոմանք ազատ են, միւսները շղթայուած, իսկ իմ ոտքերս տկարանում են սրտիս ծանրութեան տակ:*

## *XXVI*

*— Միայն ձեռքերիդ յօժարակամ պարգևներն եմ վերցնում. Էլ ոչինչ չեմ ուզում:*

*— Ճանաչում եմ ձեզ, սուս ու փուս մուրացիկներիդ, դու ուրախութեամբ կաղերսես ամենից՝ ով ինչ որ ունի:*

*— Եթէ գտնուէր ինձ համար ծաղիկ, ես նրան սրտումս կ'պահէի:*

*— Իսկ եթէ փշո՞տ:*

*— Էն էլ կընդունեմ:*

*— Գիտեմ, գիտեմ ձեզ, սուս ու փուս մուրացիկներիդ, դու ուրախութեամբ կաղերսես ամենից՝ ով ինչ որ ունի:*

*— Եթէ գէթ մի անգամ սիրազեղ աչերովդ նայես ինձ վրայ՝ դա կը դարձնի իմ կեանքը մեղուշ եւ մեռնից յետոյ:*

*— Իսկ եթէ տանջո՞ղ հայեացքով:*

*— Թող՝ նա խոցի սիրտս:*

*— Ճանաչում եմ ձեզ, սուս ու փուս մուրացիկներիդ, դու ուրախութեամբ կաղերսես ամենից՝ ով ինչ որ ունի:*

## *XXVII*

— *Պաշտիր սէրը, հաւատա՛ նրան եթէ մինչեւ իսկ քեզ վիշտ բերի:*

*Քո սիրտը մի ծածկիլ:*

— *Ա՜խ, ո՛չ, ընկեր, մութն են խօսքերդ, քեզ չեմ հասկանում:*

— *Սիրտը, սիրելիս, միայն նրա համար է, որ ձուլենք երգերին եւ արցունքներին:*

— *Ա՜խ, ո՛չ, ընկեր, մութն են խօսքերդ, քեզ չեմ հասկանում:*

*— Ցարատեւ չէ ուրախութիւնը՝ ցօղի կայլակի պէս նա մեռնում է ժպտալով, իսկ վիշտն ուժեղ է ու կայուն:*

*Թող քո աչերում ապրի սէրը թախծալի:*

*— Ա՜խ, ոչ, ընկեր, մութն են խօսքերդ, քեզ չեմ հասկանում:*

*— Արեւի ճառագայթներից լոտոսը փթթում է ու կորցնում բոլորը, ինչ որ ունի եւ չի ուզում մնալ չքացուած ձմեռուայ յաւէրժ մշուշում:*

*— Ա՜խ, ո՛չ, ընկեր, մութն են խօսքերդ, քեզ չեմ հասկանում:*

# XXVIII

*Թախիծն է պատել հարցական աչերիդ։*

*Նրանք ուզում են մտքերիս խորքերը թափանցել, ինչպէս լուսինը, որ տենչում է ծովի անդունդը սուզւել՝ խորութիւնն իմանալու։*

*Ես բացել եմ քո առաջ իմ կեանքը մի ծայրից միւսը ու, տես, չկայ ոչ մի գաղտնիք, ոչինչ չի թաքցրած։ Ահա՛ թէ ինչու դու ինձ չես ճանաչում։*

*Եթէ սա լինէր մի թանկագին քար՝ ես հարիւր մաս կանէի եւ ուլունք կ’շարէի, որ քո վիզը պարուրէր։*

*Եթէ սա լինէր խնկաբոյր ծաղիկ — նուրբ ու սիրուն — ես կ’քաղէի, որ նրանով քո վարսերը զարդարեմ։*

*Սա — սիրտ է, սիրելիս։ Ո՞ւր է նրա սկիզբն ու վերջը, ուր է նրա յատակը։*

*Դու չգիտես էս թագաւորութեան սահմանները, թէպէտ եւ դո՛ւ ես Նրա թագուհին:*

*Եթէ դա լինէր միայն վայելքի վայրկեան՝ կը ծաղկէր պայծառ ժպիտով եւ դու մի ակնթարթում կարող էիր տեսնել Նրան ու կարդալ:*

*Եթէ դա լինէր սոսկ վիշտ՝ բիւրեղ արցունքների պէս կ'ցայտէր, առանց խորագոյն գաղտնիքը պարզող խօսքերի:*

*Դա սէր է, սիրելիս:*

*Անսահման են Նրա վայելքներն ու վշտերը եւ անհատնում Նրա կարիքն ու հարստութիւնը:*

*Նա մօտ է քեզ, ինչպէս քո կեանքը, բայց դու երբէք Նրան չես հասկանայ ամբողջովին:*

## XXIX

*Ասա՛ ինձ, սիրելիս. խօսքով պատմիր էն՝ որ երգում էիր:*

*Խաւարչտին գիշեր է: Աստղերը կորել են ամպերի մէջ: Քամին ոռնում է ծմակում:*

*Ես կարձակեմ վարսերս: Իմ կապուտ շղարշը կ'սքողի ինձ գիշերի պէս:*

*Ես կրծքիս կ'սեղմեմ քո գլուխն ու անուշ մենութեան մէջ սրտիդ գաղտնիքը թոթովիր:*

*Ես կ'փակեմ աչերս ու կ'լսեմ: Ես չեմ նայի քո դէմքին:*

*Երբ խօսքերդ վերջանան՝ մենք կ'նստենք լուռ ու անշարժ:*

*Միայն ծառերը կ՚շշնջան մթութեան մէջ։*

*Գիշերը կ՚գունատուի, կ՚դալկանայ՝ Օրը կ՚բացուի։*

*Կ՚նայինք մենք միմեանց աչքերին ու կերթանք ամեն մէկս իր ճամբով։*

*Խօսիր ինձ հետ, սիրելիս, պատմիր ինձ խօսքով էն՝ որ երգում էիր։*

# XXX

*Դու իրիկուայ ամպ ես՝ իմ ցնորքներիս երկնքում լողացող:*

*Ես վառ գոյներով զարդարում եմ քեզ ու իմ սիրոյ կարօտով քո դիմագծերը վերստեղծում:*

*Իմն ես դու, ամբողջովին իմը, ո՛ դու, իմ անհուն երազներիս Բնակչուհի:*

*Վարդագօծ բոցավառ են քո ոտքերը՝ սրտիս տենչանքի կարմրութեան պէս, ո՛ դու, իմ վերջալոյսային երգերիս դաշտերի Հնձուորուհի:*

*Դառնանուշ են քո շուրթերը՝ տանջանքիս գինու համից:*

*Իմն ես դու, ամբողջովին իմը, ո՛ դու իմ մենաւոր երազներիս Բնակչուհի:*

*Կորքիս շուքով թուխացրել եմ աչքերիդ գոյնը, օ՜, դո՛ւ, իմ նայուածքիս խորութեան մշտական Հիւր:*

*Բռնեցի քեզ, սիրելիս եւ իմ նուագիս ցանցով կաշկանդեցի:*

*Իմն ես դու, ամբողջովին իմը, օ դու, իմ անմահ երազներիս Բնակչուհի:*

## XXXI

Սիրտս՝ անքնակ մի թռչուն, իր եթերը գտել է քո աչքերում:

Նրանց մէջն է օրօրոցն արշալոյսի, էնտեղ է թագաւորութիւնն աստղերի:

Ու նրանց խորքերն են սուզւում իմ երգերը:

Թո՛ղ միայն ճախրեմ էդ երկնքում՝ նրա անապատ անհունութեան մէջ:

Թո՛յլ տուր միայն ճեղքեմ նրա ամպերն ու սաւառնեմ նրանց արեգնածեմ շող ճաճանչներում:

## XXXII

*Սիրելիս, սաս, էդ բոլորը ճիշտ է:*

*Ամենը ճիշտ:*

*Աչերիս շանթերին կրծքիդ մառ ամպերը ամպրո-պային պատասխաններ են տալիս:*

*Ու էս ամենը ճիշտ է՝ իբր անուշ են շուրթերս առաջին սիրող բացւող ծաղկի պէս:*

*Թէ իմ մարմնիս վրայ են ապրում բոլոր յուշերը թառամող մայիսների:*

*Որ գեղլինը իմ ոտքերիս շփումից քնարի պէս հնչում է տաղերով:*

*Ճիշտ է եւ էն, որ գիշերն ինձ տեսնելուն պէս աչերից ցօղ արցունք է թափում եւ որ երջանկանում է արփիացնցուղ առաւօտը լուսածեմ՝ երբ պարուրում է իմ մարմինը:*

Ճի՞շտ է, միթէ ճի՞շտ է, որ քո սէրը աշխարհներ է անցել դարերով մենմենակ ու փնտրելիս է եղել ինձ:

Ուրեմն եւ էն՝ թէ երբ դու գտար ինձ՝ քո դարեւոր ցնորքը շամբուշ վերջին իր հանգիստը գտաւ իմ հոգեթով խօսքերում, եւ ծաւի աչերում, եւ քնքոյշ շուրթերում եւ գեղազան վարսերում:

Իրա՞ւ է, որ ահա էս իմ փոքրիկ ճակատի վրայ է գծուած Անմահութեան գաղտնիքը:

Ասա՛, սիրելիս, եթէ էս ամենը ճիշտ է:

# XXXIII

Սիրում եմ քեզ, Նազելիս: Ներիր իմ սէրը:

Ես բռնուած եմ ճամբէն կորցրած թռչնի նման:

Երբ սիրտս թրթռաց՝ կորցրեց իր քողն ու մերկ մնաց:

Ցաւակցօրէն պարուրիր նրան, սիրելիս, ու ներիր իմ սէրը:

Եթէ չես կարող ինձ սիրել — ներիր իմ ցաւը, սիրելիս:

Մի խէթիր էղպէս ինձ վրայ:

Ես կ՚քաշուեմ իմ անկիւնն ու կ՚նստեմ խաւարի մէջ:

Ձեռքերով կ՚ծածկեմ իմ մերկ ամօթը:

Դարձրու դէմքդ, մի՛ նայիր ինձ, սիրելիս, ու ներիր իմ ցաւը:

*Եթէ սիրում ես ինձ՝ ներիր իմ ուրախութիւնը, սիրելիս:*

*Երբ երջանկութեան հեղեղն առնի իր հետ իմ սիրտս՝ մի՛ ծիծաղի իմ վտանգաւոր աւերի վրայ:*

*Երբ իմ գահն ելնեմ ու ամենակարող սիրոյ ուժով իշխեմ քեզ վրայ, երբ՝ որպէս աստուածուհի քեզ շնորհներ տամ՝ տա՛ր իմ հպարտութիւնը, սիրելիս, եւ ներիր իմ ուրախութիւնը:*

# XXXIV

*Ինձ ոչինչ չասած՝ մի՛ գնա, սիրելիս:*

*Ես ամբողջ գիշեր սպասում էի եւ ահա աչքերս գոցւում են անքնութիւնից:*

*Վախենում եմ՝ քնի մէջ կորցնեմ քեզ:*

*Մի՛ գնա, սիրելիս, ինձ ոչինչ չասած:*

*Վեր եմ ցատկում, մեկնում եմ ձեռքս, որ քեզ դիպչեմ: Հարցնում եմ ինձ-ինչ է սա, երա՞զ է:*

*Ախ, երանի կարողանայի ծգել իմ սիրոյ կապանքները ոտքերիդ ու շղթայել նրանց իմ սրտի հետ:*

*Մի՛ գնա, սիրելիս, ինձ ոչինչ չասած:*

## XXXV

*Դու ինձ հետ խաղ ես անում՝ որ ես ուշ գլխի ընկնեմ:*

*Ծիծաղի պոռտկումով խաբում ես ինձ՝ որ ես քո արցունքները չտեսնեմ:*

*Ես գիտեմ, գիտեմ քո խորամանկությունները, —*
*Դու երբեք չես ասի էն՝ ինչ որ ուզում ես:*

*Դու գտնում ես բիւր ճամբաներ ինձնից թաքնուելու համար՝ որ քեզ չգերեմ:*

*Դու կանգնում ես մեկուսի՝ առանձին, որ ամբոխի մէջ քեզ չկորցնեմ:*

*Գիտեմ, գիտեմ ես քո խորամանկությունները, —*
*Երբեք չես գնայ էնտեղ՝ ուր ուզում ես:*

Դու կարող ես աւելին պահանջել քան ուրիշ-
ները՝ դրա համար էլ լռում ես:

Զարաճճի անհոգութեամբ դու մերժում ես իմ
բոլոր նւէրները:

Ես գիտեմ, գիտեմ քո խորամանկութիւնները —
Դու երբէք չես վերցնի էն՝ ինչ որ ուզում ես:

## XXXVI

— Նայի՛ր, սիրելիս, շշնջաց նա ինձ:

— Հեռացի՛ր — յանդիմանեցի ես: Նա չ՚շարժուեց:

Կանգնել ու բռնել էր ձեռքս:

— Դէ, թո՛ղ — ասացի ես: Նա չէր թողնում:

Մօտեցաւ ականջիս. նայեցի՝ “ինչպէս չես ամաչում„ — շաղգեց, անշարժ էր:

Նա շրթունքները մօտեցրեց այտիս: Ես դողացի. “Շատ հեռու գնացիր„ — ասացի: Բայց չամաչեց:

*Նա վարսերիս ծաղիկ խրեց. “Իզո՛ւր„ — ասացի ես ու նա անշարժ դեռ կանգնած էր:*

*Եւ ահա նա վերցրեց վզիս ծաղկապարուր Հիւ-կէնն ու գնաց:*

*Ես ե՛ւ լալիս եմ ե՛ւ հարցնում սրտիս. “Ինչու նա ետ չի դառնում:„*

# XXXVII

Ի՞մ վիզն ես ուզում զարդարել, Նազելիս, Թարմ ծաղիկներից հիւսած քո պսակով:

— Բայց չէ՞ որ դու գիտես, որ իմ հիւսած մի հատիկ պսակը շատերի համար է՝ նրանց — որոնք երեւում են մեզ միայն մի ակնթարթ, որոնք բնակւում են դեռ եւս անյայտ աշխարհներում եւ որոնք ապրում են բանաստեղծների երգերում:

Ուշ է քո խնդիրը՝ սրտեր փոխանակելու:

Կար ժամանակ երբ իմ կեանքը նման էր չ՚բացւած ծաղկի. Նրա ամբողջ բուրմունքը պահւած էր էնտեղ՝ խորքում, ինչպէս ծաղկինը — իր բաժակում:

*Հիմա նա ցնդել է, ցրվել ամենուր:*

*Ով գիտի ինչ հմայքներով կարելի է նորից հավաքել էդ բուրմունքն ու կրկին պարփակել ներսում:*

*Սիրտս էնքան իմը չէ, որ միայն մեկին տալու իրավունք ունենամ, դրա համար էլ նա տրվում է շատերին:*

## XXXVIII

*Ծուկով ժամանակով քո բանաստեղծը, սիրելիս, իր նավը՝ որ մի դիւցազնական մեծ պօէմ էր — իր մտքի ծովում բաց թողեց:*

*Աւա՜ղ, ես անզգոյշ եղայ. Նա դիպաւ ոտերիդ զնգացող ապարանջաններին ու խորտակւեց:*

*Նաւը ջարդ ու փշուր եղաւ ու երգերս շաղ գալով փուեցին քո ոտերիդ տակ:*

*Հին կռիւների մասին արած պատմութիւններիս ողջ բեռը՝ խնդացող ալիքների բերանն ընկած՝ թրջւեց արցունքից ու ծովի յատակն անցաւ:*

Իմ էս ամբողջ կորուստը, սիրելիս, բարի արա ինձ:

Եթե ես կորցրել եմ իմ անմահութեան իրաւունքը մահից յետոյ — դարձրու ինձ անմահ՝ քանի ապրում եմ:

Եւ ես չեմ լայ կորուստիս համար ու չեմ մեղադրի քեզ:

# XXXIX

Ամբողջ առաւօտն ուզում եմ պսակ հիւսել, բայց ծաղիկները սահում են ու թափւում։

Դու նստած թաքուն հետեւում ես ինձ որոնող աչերիդ անկիւնով։

Հարցրու էդ աչքերին, որ լաւ որոգայթներ են լարում՝ ո՞վ է մեղաւոր։

Ուզում եմ մի երգ երգել — իզուր, չի յաջողւում։

Թաքնուած ժպիտն է դողում շուրթերիդ վրայ, հարցրու նրան՝ ինչու չեմ կարողանում երգել։

*Թող քո ժպտուն շուրթերը երգումով պատմեն թե ինչպես — լոտոսի բաժակում հարբած մեղվի պես — ծայնս կորուեց լռութեան մէջ:*

*Իրիկուն է. ժամ է, որ ծաղիկները փակեն թերթիկներն իրենց:*

*Թոյլ տուր նստեմ կողքիդ ու հրամայիր շուրթերիս կատարել էն գործը, որ կարող է իրագործուել լռութեան մէջ՝ առկայծող աստղերի աղօտ լոյսի տակ:*

# XL

*Երբ գալիս եմ քեզ մնաս բարեւ ասելու՝ կասկածի ժպիտն է օծանում քո աչերում:*

*Ես էնքան յաճախ եմ էդպէս արել, որ դու կարծում ես թէ շուտով կ'դառնամ:*

*Ճիշտն ասած, ես էլ եմ կասկածում քեզ պէս:*

*Որովհետեւ նորից ու նորից վերադառնում են օրերը գարնան, լրիւ լուսինը հրաժեշտ է տալիս ու կրկին գալիս է մեզ մօտ, վերստին բացւում են, փթթում ծաղկունք, տարէց — տարի զուգւում բարունակ ճիւղերում — թերեւս ես էլ՝ բաժանւում եմ քեզնից միայն նրա համար, որ նորից ետ դառնամ:*

*Բայց զսպիր պա՜հ մի մոլորությունդ: Մի վրդով-վիր իզուր:*

*Երբ ես ասում եմ՝ ընդմիշտ բաժանվում եմ քեզնից — ընդունիր սա որպես ճշմարտություն ու թող արցունքի մլար մշուշը պա՜հ մի մթնեցնի մղուտ պսակ-ներն աչերիդ:*

*Իսկ յետոյ՝ երբ ես նորից ետ դառնամ, ժպտա մեղուշ հրճւանքով — ինչպես միայն դու ես ժպտում:*

## XLI

*Ուզում եմ արտասանել քեզ համար պահած գաղտնածածուկ բոլոր խոսքերը, բայց չեմ համարձակւում, վախենում եմ ծիծաղես ինձ վրայ:*

*Դրա համար էլ ինքս եմ ինձ վրայ ծիծաղում ու գաղտնիքս կատակի տալիս:*

*Ես արհամարհեցի տանջանքս՝ վախենալով, որ դու էղպէս կ'վարւես:*

*Ուզում եմ ասել քեզ ճշմարտագոյն էն բոլոր խոսքերը, որ պահել եմ քեզ համար՝ բայց չեմ յանդըգնում, վախենում եմ, որ դու չհաւատաս նրանց:*

Դրա համար էլ խոսքերս դարձնում եմ սուտ եւ ինչ որ մտածում եմ՝ նրա հակառակն եմ ասում:

Ես ձեւացնում եմ, որ տանջանքս դատարկ բան է, վախենալով, որ դու էդպէս կ'մտածես:

Ուզում եմ բերանս բանալ եւ ամենաթանկագին խոսքերս, որ քեզ համար եմ պահել, ասեմ, բայց չեմ համարձակւում, կասկածում եմ — կ'հատուցես ինձ արդեօք:

Դրա համար էլ քեզ կանչում եմ կոպիտ անուններով ու ցոյց եմ տալիս իմ բիրտ ուժը:

Ստիպում եմ քեզ տանջուել՝ վախենալով, թէ երբէք չես իմանայ ինչ է տանջանքը:

Ուզում եմ լինել քեզ մօտ առանց շշուկի, բայց չեմ յանդգնում՝ վախում եմ, սիրտս ինձ դաւաճանի ու գտնի քո շուրթերի ճամբան:

*Եւ ահա ես բարբաջում եմ շաղակրատի պէս ու սիրտս խօսքերի ետեւը թաքցնում:*

*Ես դաժանօրէն խիստ եմ դէպի իմ տանջանքը, վախենալով, որ դու էդպէս կ՚վերաբերուես·*

*Ուզում եմ հեռանալ քեզնից, բայց չեմ համարձակւում, վախենում եմ նկատես իմ երկչոտութիւնը:*

*Դրա համար էլ ռայի պէս վեր եմ բարձրացնում գլուխս հպարտօրէն ու յաղթական համարձակութեամբ մտնում եմ էնտեղ, որտեղ դու ես:*

*Եւ յառած աչերիդ անընդհատ շեշտակի խայթոցները միշտ նորոգում են իմ թարմ տանջանքը:*

## XLII

Է՛յ, խելառ, թունդ հարբած կոնծաքան՝

Եթէ դռները բաց ես անում քացով ու յիմար ես ծեւացնում քեզ ամենքի առաջ,

Եթէ մի գիշերուայ մէջ դատարկում ես քսակդ ու ծաղրում խելացիութիւնը,

Եթէ դու թափառում ես տարօրինակ կածաններով ու զւարճանում ցանցառ, անմիտ բաներով,

Գործ չունիս խելքի եւ իմաստի հետ,

Եթէ փոթորկի ժամին առագաստդ պարզելով մրրիկի հանդէպ ջարդում ես ղեկդ երկու մասի —

...ապա ես հետեւում եմ քեզ, ընկեր, գալիս եմ հարբելու քեզ հետ ու ջհանդամը կորչեմ — հէրն անիծած:

Իմ օրերն ու գիշերները ես կորցրել իմ գիտուն եւ իմաստուն հարեւանների շրջանում:

Շատ բան գիտենալուց մազերս ճերմակել են ու շատ դիտելուց աչքերս մթնել:

Տարիներով ես հաւաքել եմ ու դիզել բաների փշրանքներ ու մանրուքներ:

Ջարդի, տրորի, պա՛ր եկ նրանց վրայ ու բոլորը տո՛ւր քամուն:

Որովհետեւ ես գիտեմ՝ ամենախոր իմաստութիւնն է — լինել հարբած ու ջհանդամը կորչել, հէրն անիծած:

*Թող կործեն խղճի բոլոր սուտ խայթոցները, թող ես անդարձ կորցնեմ իմ ճամփէս:*

*Թող ամեհի խելագարման ցասումն իմն հանի խարիսխից:*

*Աշխարհը լիքն է օգտակար եւ ընդունակ, բանուոր ու գործաւոր մարդկանցով:*

*Նրանցից ոմանք հեշտութեամբ գնում են առաջին շարքերում, միւսները համեստօրէն շարժւում են նրանց ետեւից:*

*Թողէք երջանիկ լինեն նրանք ու յաջողակ — ու թողէք ես լինեմ փուչ ու անպիտան:*

*Որովհետեւ ես գիտեմ, բոլոր գործերին մի վերջ կայ՝ Լինել հարբած ու ջհանդամը կորչել — հէրն անիծած:*

*Երդւում եմ հրաժարուել էս վայրկեանից իսկ արժանաւոր մարդկանց շարքը դասւելուց:*

*Դէն եմ շպրտում հպարտութիւնս՝ իմ գիտու-թեամբ ու կարողութեամբ դատելու — ո՞րն է լաւ, ո՞րը վատ:*

*Ես փշրում եմ յուշերիս արդօրալի անօթը՝ շաղ տալով արցունքներիս վերջին կաթիլը:*

*Ալ պտուղների պէս կարմրին տւող գինու փրփուրը կ՚սուզւեմ ու նրանով կ՚լուսաւորեմ իմ ծիծաղը:*

*Ես դիտմամբ պատառ-պատառ եմ անում քա-ղաքացու իմ ցուցանակը:*

*Ու սուրբ երդում եմ տալիս՝ լինել անպիտան, հարբած ու ջհանդամը կորչեմ — հէրն անիծած:*

## *XLIII*

*Ո՛չ ընկերներ, ինչ ուզում էք ասէք՝ ես երբէք ծգնաւոր չեմ դառնայ:*

*Եւ երբէք ծգնաւոր չեմ լինի՝ մինչեւ որ նա ինձ հետ կուսանոց չ՚մտնի:*

*Մինչեւ չունենամ մի մեկուսացած առանձին ապաստան ու հեծութեան ուղեկցուհի՝ ծգնաւոր չեմ դառնայ — սա է իմ անդարձ վճիռը:*

Ո՛չ ընկերներ, երբէք ես չեմ ձգի իմ տունն ու տեղը, օջախս ու չեմ գնայ անտառի խորքերը, քանի որ չի հնչում թովիչ ծիծաղը նրա արձագանգող սրահում, չի ծածանւում շաֆրանի գոյնի ծածկոցը քամուց ու խլացած շշունջը չի խորացնում խորութիւնը լռութեան:

Ես երբէք ճգնաւոր չեմ դառնայ:

## XLIV

Ներիր, Արժանապատիւ Հայր, մեղաւոր էս զոյգը:

Էսօր գարնան վայրի քամիները փչում են բարկ գալարումով եւ իրենց հետ տանում են մեռած տերեւներն ու փոշին հեռու... Նրանց հետ կորչում են եւ քո բոլոր պատգամները:

Մի՛ ասի, Հայր, թէ կեանքն ունայնութիւն է:

Որովհետեւ մենք էս անգամ կարճ ժամանակով ենք հաշտութիւն կնքել մահի հետ՝ միայն մի քանի խնկաբոյր ժամով ենք մենք դարձել անմահ·

Եթէ նոյն իսկ թագաւորական բանակը գայ ու կատաղօրէն յարձակւի մեզ վրայ՝ մենք գլուխներս տխուր թափ կ'տանք ու կասենք՝ "Դուք մեզ խանգարում էք, եղբայրներ։ Եթէ դուք սիրում էք էդ աղմըկոտ խաղը՝ գնացէք ուրիշ տեղ նիզակ ճօճելու։ Որովհետեւ մենք միայն մի քանի փութանցիկ վայրկեանով ենք դարձել անմահ։„

Իսկ եթէ բարեկամ մարդիկ գային ու հաւաքւէին մեր շուրջը՝ մենք համեստութեամբ կ'բարեւէինք ու կասէինք՝ "Էս թանգ բախտը մեզ նեղում է ու ճնշում։ Անհուն եթերի տարածութիւնը, որտեղ ապրում ենք մենք — շատ է փոքր ու նեղ։ Որովհետեւ գարնան ծաղիկները երամներով բացւում են ու փթթում, իսկ մեղուների ժրաջան թեւերը իրար են զարնւում պարսելիս։ Մեր փոքրիկ երկինքը, որտեղ ապրում ենք մենք, երկու անմահներս, ծիծաղելի նեղ է։„

# XLV

Ճամբայ ընկնող հիւրերին "Տէր ընդ ձեզ" ասա բարի երթ մաղթելով մաքրի նրանց հետքը ոտքերի:

Էն, ինչ որ մօտ է, պարզ ու սիրելի՝ սրտիդ սեղմի՛ ժպտալով:

Էսօր՝ իրենց մահուան ժամը չիմացող տեսիլք-ների հանդէսն է:

Թող քո ծիծաղն էլ լինի անմեղօրէն զուարթ՝ ինչ-պէս լոյսի շողշողուն փայլատակումը ջրի ծփանքում ու փրփուրում:

Թող քո կեանքն անհոգ ցնծութեամբ կաքաւի ժամանակի ափին՝ ինչպէս ցօղի կաթիլը կանաչ տե-րեւի նուրբ ծայրին:

Զարկիր քնարիդ, թող լարերը հնչեն համաչափ թռուցիկ նուագներով:

# XLVI

Ձգեցիր ինձ ու գնացիր քո ճամբով:

Ես մտածեցի՝ թէ պէտք է լալ ու պահել հոգու մէջ միայն քո դէմքը ընտելացած երգերի ոսկէ հիւկէնով:

Բայց, աւա՜ղ, դու խեղկատակ բախտ, չէ՞ որ ժամանակն էնքա՛ն կարճ է:

Տարէց տարի թօշնում է ջահելութիւնը, սլանում են օրերը գարնան, ծաղիկներն էլ էնքան են քնքոյշ ու նուրբ, որ մեռնում են առանց պատճառի, իսկ կեանքը — ինձ մի իմաստուն է ասել — կեանքը լոտոսի ցօղի կաթիլ է միայն:

*Ու էս ամենը մոռանամ՝ որ թիկունքն ինձ դարձնող կնոջ ետեւից մտնիկ տամ:*

*Դա կ՚լինէր եւ անմիտ, եւ կոպիտ — չէ՞ որ ժամանակն էնքա՞ն կարճ է:*

*Դէ, եկէք իմ անծրեւոտ գիշերներ՝ ամպրոպային գոռումով շանթաքեր, ծիծաղիր դու, իմ ոսկի աշուն, եկ, անհոգ ու կամշոտ ապրիլ՝ շռայլիր համբոյրներ...*

*Եկ եւ դու, դո՛ւ էլ, դո՛ւն էլ եկ:*

*Դուք գիտէք, սիրելիք, որ մենք մահկանացու ենք: Մի՞թէ խելացի է կոտրած սրտով մնալ՝ կնոջ պատճառով՝ որ իր սիրտը մեզնից է խլել:*

*Չէ՞ որ ժամանակն էնքա՞ն կարճ է:*

*Քաղցր է նստել անկիւնում, խորհել եւ երգել յանգերով՝ որ քո մէջ է իմ ամբողջ աշխարհը:*

*Հերոսություն է՝ գրկախառնվել վշտի հետ, փայ-փայել նրան ու հրաժարվել մխիթարությունից՝ սփո-փանքը մերժել:*

*Բայց ահա՛ կրկին մատաղ դէմքը իմ դրան մօտ է, կրկին մեր հայեացքներն ակնապարար յառել են միմեանց:*

*Էլ ինձ անելու ոչինչ չի մնում, միայն թէ սրբեմ արցունքս ու նորից երգեմ՝ նոր եղանակով...*

*Չէ որ ժամանակն էնքա՞ն կարճ է:*

## XLVII

Քանի որ դու էդպէս ես ուզում՝ էլ չեմ երգի։

Քանի որ սիրտդ թրթռում է՝ չեմ նայի աչերիդ։

Եթէ ես զբօսանքի ժամանակ վախեցնում եմ քեզ՝ էլ չեմ անցնի քո ճամբով։

Դէ, որ խանգարում եմ պսակ հիւսելդ՝ էլ չեմ քայլի քո խաղաղ պարտէզի մօտով։

Քանի որ իմ թիակից ջուրը շատ է շաչում-շառաչում, էլ չեմ մօտենայ նաւակով քո ափին։

## XLVIII

Ազատիր ինձ, սիրելիս, քո հմայքիդ կապանք-ներից:

Բա՛ւ է, էլ պէտք չի համբոյրի գինին:

Շունչս կտրւում է խնկաբոյր կնտրուկի թանձր ամպերից:

Բա՛ց դուռը, թող ներս խուժի լոյսն առաւօտի:

Ես ինձ կորցրել եմ քո մէջ՝ պարուրուած զգւանք-ներիդ ծալքերով:

Ազատիր ինձ քո թովիչ հրապոյրից ու ետ տուր ինձ իմ առնութիւնը, որ կարենամ առաջարկել քեզ իմ փրկւող սիրտը:

# XLIX

Բռնել եմ նրա ծեռներն ու իրեն սեղմում եմ կրծքիս:

Ես ուզում եմ լատոքել գիրկս նրա հմայքով, վերցնել համբոյրներով ժպիտը նուրբ այտերից ու մի նայուածքով ծաւի աչերի հայեացքն ըմպել:

Բայց աւա՜ղ... մի՞թէ հնարաւոր է:

Ո՞վ կարող է խլել երկնքից նրա կապոյտը լազուր:

Ես ուզում եմ բռնել գեղեցկութիւնը, բայց նա դուրս է թռչում ու գրկումս մնում է միայն մարմինը:

Յուսահատ ու վհատ՝ նահանջում եմ: Ի՞նչպէս կարող է մարմինը դիպչել էն ծաղկանց, որոնց միայն հոգին է համարձակւում մօտենալ:

## Լ

Սիրտս, սիրելիս, օր ու գիշեր տենչում է քո հանդիպմանը, էն հանդիպմանը, որ նման է ամեն ինչ լափող աւերիչ մահի:

Փոթորկի նման վանիր ինձ հեռու, վերցրու՝ ինչ որ ունեմ, խանգարիր քունս ու յափշտակիր երազներս:

Ծորթիր իմ ամբողջ աշխարհը:

Ու թող, որ էդ աւեր ամայութեան, հոգու էդ մերկութեան ժամին միաձուլւենք գեղեցկութեան մէջ:

Աւա՜ղ, իզուր են տենչերս:

Մի՞թէ յուս կայ միաձուլւելու որեւ է բանում եթէ ոչ Քո մէջ, իմ Աստուած:

## LI

Դէ, վերջացրու վերջին երգը — բաժանւենք:

Մոռացիր էս գիշերը՝ երբ նա էլ չ'կայ:

Ո՞ւմն էի ուզում շղթայել գրկումս: Երազները երբէք չեն կարող գերի դառնալ ու շղթայւել:

Ազատ ձեռքերով սեղմում իմ կրծքիս դատարկութիւնն ու սիրտս պայթում է բարկութիւնից:

# LII

*Ինչու հանգաւ ճրագը:*

*Ես ծածկեցի նրան իմ ծածկոցով, որ քամուց պաշտպանեմ եւ դրա համար հանգաւ ճրագը:*

*Ծաղիկն ինչո՞ւ թառամեց:*

*Ես ոիշտ ու անյագ սիրով նրան կրծքիս սեղմեցի, դրա համար էլ էն ծաղիկը թառամեց:*

*Ինչո՞ւ առուն լռեց:*

*Ես պատուար շինեցի նրա վրայ, որ նա ինձ ծառայի ու լռեց առուն:*

*Ինչո՞ւ կտրուեց քնարի լարը:*

*Ես ուզեցի, որ նա իր ուժից վեր ձայն հանի, դրա համար էլ կտրուեց լարը:*

# LIII

*Ինչո՞ւ ես դու էդպես նայում, ուզում ես ինձ ամաչեցնե՞լ։*

*Ես եկել եմ ոչ որպես մուրացիկ։*

*Ես միայն մի փութանցիկ ժամով կանգ եմ առել քո բակի ծայրին՝ պարտեզի ցանկապատի ետեւում։*

*Ինչո՞ւ ես դու էդպես նայում, ուզում ես ինձ ամաչեցնե՞լ։*

*Վարդ չեմ քաղել քո պարտեզից եւ ոչ էլ պտուղ եմ պոկել։*

•

*Ես միայն ճամբու շւաքում՝ ծառի տակ պատսպարւել եմ, ուր ամեն մի անծանօթ ճամփորդ կարող է հանգստանալ:*

*Վարդ չեմ քաղել քո պարտէզից:*

*Այո, ոտքերս յոգնած են ու յորդ անձրեւն սկսւեց:*

*Գլխիկոր բամբուկի օրօրւող շիւղերում ոռնում է քամին:*

*Ամպերը՝ կռւի դաշտից հալածւածների նման սլանում են երկնքի երեսով:*

*Ոտքերս յոգնած են:*

*Չ՚գիտեմ ինչ ես մտածում իմ մասին, ո՞ւմ հետ ես շփոթում ինձ եւ ո՞ւմն ես սպասում դռանդ մօտ կանգնած:*

Կայծակի սլաքաշեշտ շանթերը շլացնում են աչքերդ Տեռուն դիտող:

Ես չեմ իմանում՝ նկատո՞ւմ ես ինձ մթան մէջ:

Չ՚գիտեմ՝ ինչ ես մտածում իմ մասին:

Օրը վերջացաւ եւ անձրեւը պահ մի կտրուեց:

Ես թողնում եմ ծառի շւաքը քո պարտէզիդ ծայրին ու քակիդ կողքի կանաչ գետինը:

Մթնում է: Փակիր քո դուռը: Ես ճամփայ եմ ընկնում:

Օրը վերջացաւ:

## LIV

*Ո՞ւր ես շտապում էս ուշ գիշերին կողովը ծեռքիդ՝ երբ շուկան վերջացել է:*

*Ամենքն իրենց շալակներով տուն են գնացել. լուսինը բարձրացել է գիւղի ծառերի կատարը:*

*Լաստավարքին կանչող ծայների արձագանգը պղտոր գետի վրայով հասնում է հեռաւոր ճահճին, ուր ննջում են վայրի բադերը:*

*Ո՞ւր ես շտապում էս ուշ գիշերին կողովը ձեռքիդ՝ երբ շուկան վերջացել է:*

*Քունը դրել է իր մատներն աշխարհի աչքերի վրայ:*

*Լուռ են բներն ագռավների. բամբուկի տերևների շշուոցը կտրուել է:*

*Դաշտերից տուն դարձած բանուորները փռում են իրենց խսիրները բակերում:*

*Էս ո՞ւր ես շտապում ուշ գիշերին կողովը ձեռքիդ՝ երբ շուկան վերջացել է:*

## LV

Կեսօր էր, երբ դու գնացիր:

Արևն երկնքում փայլում էր պայծառ:

Վերջացրել էի գործս ու մենակ նստած էի իմ պատշգամբում, երբ դու գնացիր:

Երբեմն յանկարծակի հողմն էր փչում՝ իր հետը բերելով քուրմունքն անուշ հեռու-հեռու դաշտերի:

Տատրակներն առանց յոգնելու մնչում էին. մի մեղու մոլորուել, ընկել էր սենեակս ու բզզացնում էր՝ հետը բերելով համբաւները հեռու-հեռու դաշտերի:

Քնած էր գիւղը կէսօրւայ տապին: Փռւած է ճամփան ամայի:

Երբեմն յանկարծակի լսւում էր սոսափիւնը տերեւների ու կրկին կորչում:

Ես դիտում էի երկինքն ու նրա լազուրի վրայ քանւածք գործում էն անւան տառերով, որ ես գիտէի՝ երբ գիւղը քնած էր կէսօրւայ տապին:

Մոռացել էի՝ մազերս հիւսեմ: Զեփիւռը ծուլօրէն ծածանում էր նրանց այտերիս մօտ — խաղ անելով:

Գետը հոսում էր ստւերախիտ խաղաղ ափերով:

Չէին շարժւում հեզ ամպերը ծիւնաթոյր:

Մոռացել էի՝ մազերս հիւսեմ:

*Կէսօր էր՝ երբ դու գնացիր։*

*Ճամփու վրայ խորշակուռ փոշի էր կանգնած ու դաշտերն արեւկէզ հառաչում էին տոչորուելով։*

*Տատրակները մնչում էին սաղարթախիտ պուրակում։*

*Ես մենակ նստած էի իմ պատշգամբում՝ երբ դու գնացիր։*

## LVI

*Ես մէկն էի էն բազմաթիւ կանանցից՝ որ զբաղւած են իրենց ընտանեկան առօրեայ սիւ հոգսերով:*

*Ի՞նչու դու ինձ ընտրեցիր ու տարար մեր քաղցր ընտանեկան անուշ յարկի տակից:*

*Չ՚պարզւած սէրը — սուրբ է: Փակւած սրտի խաւարում նա փայլում է գոհար քարի նման:*

*Օրւայ տարօրինակ լոյսի տակ նա խղճօրէն աղօտ է, դժգոյն:*

*Ա՜խ, դու պատռեցիր իմ սրտի քողն ու լոյս աշխարհ հանեցիր իմ թրթռացող սէրը՝ աւերելով առյաւէտ էն շւաք անկիւնը, որտեղ նա իր բոյնն էր հիւսել:*

Ուրիշ բոլոր կանայք մնացել են առաջվայ պէս:

Նրանցից ոչ մէկը չի նայել իր էութեան խոր-քերը եւ նրանք իրենք էլ չեն իմանում իրենց գաղտնիքը:

Նրանք անհոգ ժպտում են ու լալիս, շաղակրա-տում են ու աշխատում: Ամեն օր տաճար են գնում, ճրագ վառում ու գետից ջուր են կրում:

Ես հաւատում էի, որ իմ սէրն ազատ կ'լինի ամօթից ու հեռու անտունների խայտառակութիւնից:

Բայց դու երես ես դարձնում ինձնից:

Այո, քո ճամփան բաց է քո առաջ, բայց իմ դարձիս ճամփան՝ ետ գնալու համար — դու փակել ես ու թողել ինձ բոլորովին մերկ աշխարհի առաջ եւ օրն ու գիշերը ակնապիշ հայեացքով չեն հեռացնում իրենց անթարթ աչքերն ինձնից:

## LVII

*Ես քաղեցի քո ծաղիկը, ո՛վ կեանք...*

*Սեղմեցի կրծքիս ու փուշը խոցեց:*

*Երբ անցաւ օրն ու մթնեց՝ տեսայ, որ ծաղիկը թառամել էր, մնացել է միայն խոցը:*

*Դեռ շատ հրաշագեղ ու անուշաբոյր ծաղիկներ կունենաս դու, կեանք:*

*Սակայն իմ ծաղիկ քաղելու ժամանակը անցել է ու շափառուկ գիշերում ես վարդ չունեմ՝ մնացել է միայն խոցը:*

# LVIII

Մի առաւօտ լուսոյի տերեւով պարուրուած ծաղ-կեայ Հիւսկէն տուեց ինձ մի կոյր աղջիկ ծաղկոցում:

Փաթաթեցի Հիւսկէնը վզիս ու փայլեցին ար-ցունքներն իմ աչքերում: Համբուրեցի նրան ու ասի:

— Կոյր ես դու, ինչպէս իրենք՝ ծաղիկները, եւ դու ինքդ էլ չ'գիտես, թէ որքա՜ն սիրուն է քո նուէրը

# LIX

*Դու ոչ միայն Աստծու ստեղծագործութիւնն ես, ով կին, այլ եւ տղամարդկանց, էդ նրանք են իրենց հոգու գեղեցկութեամբ քեզ միշտ զարդարում:*

*Ոսկէ երեւակայութեան մանուածքից բանաստեղծները քեզ համար հիւսածք են գործում ու նկարիչները միշտ նոր անմահութիւն դրոշմում քո դէմքին:*

*Ծովը իր մարգարիտն է տալիս, հանքերը՝ ոսկին, ամռան պարտէզները ծաղկունք են շնորհում, որ զուքեն, զարդարեն քեզ ու դարձնեն աւելի թանկագին:*

*Տղամարդու սրտի աւիւնն ու տենչը իրենց փայլով շուք են տալիս քո ջահէլութեանը: Դու կէս կին ես՝ կէս ցնորք:*

# LX

Կեանքի ժխորի ու աղմուկի մէջ կանգնած ես դու, քարից կերտած գեղեցկութիւն, լուռ ու մենակ, անշարժ, հեռո՜ւ:

Հսկայ ժամանակը սիրահարուած՝ ոտքերդ է ընկել ու շշնջում է՝

— Ասա՛, ասա՛ ինձ, ո՛վ դու չքնաղ կոյս, ասա ինձ, սիրելիս:

Բայց քո խօսքդ մեռած է քարի մէջ, ո՛վ Անսա-սան Գեղեցկութիւն:

## LXI

*Լուռ, սիրտ իմ, թող քաղցր լինի ժամը հրաժեշտի:*

*Թող դա լինի կատարելութիւն եւ ոչ մահացում:*

*Թող սէրը ձուլվի յուշերին — տանջանքը երգին:*

*Թող քնի մօտ փակվեն թեւերն ու էդպէս վերջանայ վերասլաց թռիչքը դէպ եթեր:*

*Թող քո ձեռներից վերջին շոյումը լինի քնքոյշ՝ ինչպէս գիշերային ծաղկի փաղաքշանքը:*

*Դանդաղեցրու՛ վայրկեանդ, կա՛նգ առ, ով Հրաշագեղ Վախճան, ու լռութեան մէջ ասա վերջին խօսքերդ:*

*Ես երկրպագում եմ քեզ ու բարձր եմ պահում ճրագս, որ լուսաւոր լինի ճամբադ:*

## LXII

Մթնշաղին՝ երազիս խաւար կածանով գնում էի իմ անցեալ կեանքում ծանօթ սիրուհուս մօտ:

Նրա տունը կանգնած էր խուլ փողոցի ան-կիւնում:

Իր սիրած սիրամարգն իրիկւայ հովի դէմ ննջում էր վանդակի ծողի վրայ եւ աղաւնիները մունջ կուչ էին եկել իրենց անկիւնում:

Նա շէմքի մօտ ճրագը գետին դրեց ու կանգ առաւ իմ առաջ:

Բարձրացրեց իր խոշոր աչքերը՝ նայեց դէմքիս ու հարցրեց շշուկով — "ո՞նց ես, ընկեր, լա՞ւ ես:"

Ուզեցի պատասխան տամ, բայց մեր լեզուն կապւեց:

Շատ միտք արի՝ չ'կարողացայ յիշել մեր անունները:

Արցունքները փայլեցին նրա աչքերում: Մեկնեց ինձ աջ ձեռքը:

Բռնեցի ու լուռ կանգնած էի:

Ճրագի բոցն երերաց իրիկւայ հովից ու հանգաւ:

## LXIII

Ճամբորդ, դու մեկնելո՞ւ ես:

Դեռ լուռ է գիշերն ու խաւարը կանգնած անտառի վրայ:

Վառ են մեր վերնատան ճրագներն ու պայծառ, ծաղիկները շա՜տ են թարմ ու ջահէլ աչքերը դեռ արթուն ու կայտառ:

Միթէ արդէն ճամբայ ընկնելուդ ժամանակն է:

Ճամբորդ, դու մեկնելո՞ւ ես:

Մենք քո ոտքերը չենք կապել մեր աղերսող ձեռքերով:

*Դռները բաց են քո առաջ: Ձիդ թամքած կանգնած է դրան մօտ:*

*Եթե մենք ուզեցել ենք քո ճամբան կտրել, դա արել ենք միայն մեր երգերով:*

*Եթե քեզ նոյն իսկ ուզեցել ենք ետ պահել՝ էն էլ միայն մեր հայեացքներով:*

*Անզօր ենք մենք, ճամբորդ, քեզ պահելու մեզ մօտ:*

*Արցունքից զատ մենք ոչինչ չունենք:*

*Ի՞նչ անշէջ կրակ է հուրհուրում քո աչքերում:*

*Ի՞նչ անհանգիստ ջերմ է հրահրում քո արիւնը:*

*Ի՞նչ կանչ է մթան միջից քեզ շտապեցնում:*

*Ի՞նչ սարսափելի կախարդանք տեսար երկնքի աստղերում, որ նրանից յետոյ գիշերն անշշուկ ու դիւթիչ — քո սիրտը մտաւ:*

*Ցոզնատամնչ սիրտ, եթէ դու ուրախ հանդի-պումներ չես փնտրում, եթէ դու հանգիստ ես ուզում՝ մենք կ՚մարենք ճրագներն ու մեր քնարները կ՚լռեն։*

*Մենք մթութեան մէջ անշարժ կ՚նստենք՝ ուն-կընդիր տերեւների խշշոցին ու լուսինը գունատ շողեր կ՚ծորի քո պատուհանի վրայ։*

*Օ, ճամբորդ, դա ինչ անքուն ոգի է քեզ դիպել մառ գիշերուայ խորքերից։*

•

## LXIV

*Ես անցկացրի օրս արեւկէզ ու խորշակահար ճամբու փոշում:*

*Հիմի, իրիկւայ հովին բախում եմ քարաւանսարայի դարպասը: Մոռացւած ու քարուքանդ է նա:*

*Հոյակապ Աշաթն իր անօթի արմատներն ագահօրէն խրել է պատի ճեղքւածները:*

•

*Մի ժամանակ ճամբորդները գալիս ու լւանում էին էստեղ իրենց յոգնած ոտքերը:*

*Նոր ծնուած լուսնի աղօտ լոյսի տակ նրանք փռում էին իրենց խսիրներն ու նստոտելով՝ զրուցում տարօրինակ աշխարհների մասին:*

*Առաւօտը՝ երբ թռչունները զւարթացնում էին նրանց ու ճամբու ծաղիկները ժպտաղէմ ողջունում — նրանք թարմացած զարթնում էին քնից:*

*Իսկ երբ ես էստեղ եկայ, ոչ մի վառուած ճրագ չ'դիմաւորեց ինձ:*

*Անթիւ գիշերներից մոռացւած ճրագների այրուած պատրոյգների մրոտ քծերն են՝ պատերին ծեփած — կոյր աչքերով դիտում ինձ:*

*Զորացած ճահճի թփերում առկայծում են լուսապէծիկներն ու քամբուկի ճիւղերը ստւեր են զցել կանաչով ծածկւած ճամբու վրայ:*

*Օրը թեքւում է ու ես ոչ մէկի հիւրը չեղայ:*

*Երկա՜ր գիշեր է փռւած առջեւս, իսկ ես յոգնած եմ:*

## LXV

Նորից քո ձայնն եմ ես լսում։

Արդէն իրիկուն է։ Խոնջութիւնն ինձ շղթայել է սիրոյ պաղատող ձեռքերով։

Եւ դու ինձ կանչո՞ւմ ես։

Իմ օրն ամբողջ ես քեզ զոհեցի, բայց դու, անսիրտ դշխուհի, մի՞թէ պէտք է ինձնից եւ գիշերը խլես։

Ամեն բան իր չափն ու սահմանն ունի եւ գիշերւայ մենութիւնը պատկանում է ամեն մէկին։

Մի՞թէ քո ձայնն է, որ կտրում է խաւարն ու հասնում ինձ։

Մի՞թէ իրիկունը չի հնչում քո դռան մօտ գիշերային երաժշտութեամբ:

Ու անշշուկ թեւաւոր աստղունք երբէք չեն մօտենում երկնքի երեսով տանիքին քո դղեակի՝ որտեղ խիղճ չկայ:

Կամ քո պարտիզում երբէք չեն թափում թառամող ծաղիկները՝ քնքոյշ մահուան գիրկն ընկնելով:

Ու պէտք է որ դո՛ւ, անհանգիստ, կանչե՛ս, միշտ կանչե՛ս ինձ:

Դէ որ էդպէս է, թող թախծոտ սիրած աչերն իզուր սպասեն ու լան:

Թող ճրագը վառած մնայ մենակ ու լուռ տանը:

Թող լաստանաւը տուն տանի յոգնած բանւորներին:

...Իսկ ես, ես մոռացայ քնել — թողնում եմ իմ երազներս ու շտապում քո ձայնին:

## LXVI

*Մի խենթ թափառական փորձաքար էր փըն-տրում:*

*Փոշու մէջ կորած, գզգզւած գոուզ մազերով, արեւից այրւած մարմինը նման էր ստուերի. շուրթերը պինդ սեղմած՝ իր սրտի փակ դռների պէս իսկ աչ-քերը փայլատակում էին էն լուսապէծիկի կրակի նման՝ որ իր էգն է որոնում:*

*Նրա առաջ աղմկում էր անսահման ովկիանը:*

*Ճաղակրատ, աղմկոտ ալիքները, վշշալով ան-վերջ, պատմում էին թաքնւած հանքերի մասին, ծի-ծաղելով իրենց լեզուն չ'հասկացողների վրայ:*

Գուցէ նա էլ յոյս չունէր, բայց նա չէր մտածում հանգստի մասին՝ որովհետեւ որոնումները դարձել էին կեանք նրա համար —

Ինչպէս ովկեանը՝ իր բազուկները երկնքին մեկնած յաւէտ ձգտում է անհասանելուն —

Ինչպէս աստղերը պտոյտ են անում շրջաններով ու միշտ փնտրում են էն նպատակը, որին երբէք չեն հասնելու —

Էնպէս էլ խենթը փոշոտ թուխ մազերով դեռ թափառում էր ամայի ափերում փորձաքարի ետեւից:

Մի անգամ մի գիւղացի երեխայ մօտեցաւ նրան ու հարցրեց՝ “Ասա, էդ ո՞րտեղից գտար մէջքիդ կապած ոսկի շղթան:„

Խենթը ցնցւեց. Ճիշտ որ իր երկաթէ շղթան ոսկի էր դարձել: Դա երազ չէր, բայց ինքը չէր նկատել՝ երբ է փոխուել:

Բարկացած ծեռքը խփեց ճակատին՝ ո՞րտեղ, էս ՞րտեղ ինքը հասաւ նպատակին ու չիմացաւ:

Սովորութիւն արեց՝ քարեր հաւաքել, քսել շղթային եւ իսկոյն դէն ձգել առանց նայելու՝ կատարուեց որեւէ փոփոխութիւն: Էսպէս էլ խենթը գտաւ ու կորցրեց փորձաքարը:

Արեւը՝ երկինքը ոսկեզօծելով խեղդւում էր արեւմուտքում:

Ու նորից ետ դարձաւ խենթն իր եկած ճամբով կորցրած հարստութիւնը գտնելու — ուժասպառ, ջլատւած ու կորացած, ինչպէս արմատախիլ արւած ծառ:

## LXVII

Թէպէտ եւ սահուն քայլերով գիշերն է իջնում ու նշան է անում՝ լռեն երգերը բոլոր,

Թէպէտ եւ քո բոլոր ընկերները ցրուել են քնելու եւ դու էլ յոգնած ես,

Թէպէտ եւ սարսափն է թաքնուած խաւարում ու քողարկուած է դէմքը երկնքի՝

Բայց եւ էնպէս, թռչնակս, լսիր ինձ, մի՛ ծալիր թեւերդ:

Էն անտառի տերեւների աղջամուղջը չէ, նա մռնչող ծովն է ծառս լինում՝ սեւ ու դաժան վիշապի պէս:

*Փթթող յափրուկի ծաղիկները չեն կաքաւում —*

*Պարում է փրփուրը շառափնաթափ:*

*Օ՛, ո՞ւր է արեգջեր կանաչ եզերքն ու քո քունը:*

*Թռչնակ, օ դու իմ թռչնակս, լսիր ինձ, մի ծալիր թեւերդ:*

*Նիրհել է քո ճամբու կողքին գիշերը տխուր. քնել է այգը մութ սարերի ետեւում:*

*Լուսակարկաչ աստղունք՝ շնչասպառ, հեւիհեւ համրում են ժամերը, գունատ լուսինը յոգնել է մղուտ գիշերուայ խորքերը սուզւելուց:*

*Թռչնակ, իմ թռչնակ, լսիր ինձ, մի ծալիր թեւերդ:*

*Չկայ յոյս քեզ համար ու վախենալու էլ ժամանակը չէ:*

*Չկայ քեզ համար ո՛չ խօսք, ո՛չ շշունչ, ո՛չ ծպտուն:*

*Ոչ հանգիստ, հանգրուան եւ ոչ քուն:*

*Ունիս միայն մի զոյգ թեւ եւ արծակ, անշաւիղ երկինք.*

*Թռչնակս իմ, ինձ լսի՛ր, մի՛ ծալիր թեւերդ:*

# LXVIII

*Ո՛չ ոք անմահ չէ, եղբայր, եւ ոչինչ յաւիտեան չի մնում:*

*Էս լաւ իմացած եղիր եւ ուրախ կացիր:*

*Կեանքը հին սովորական քեռը չէ եւ ոչ էլ երկար է մեր քռնած ճամբան:*

*Միշտ միակ եւ նոյն երգիչը չէ, որ երգում է եւ ոչ էլ յաւիտեան նոյն հին երգն է նա երգում:*

*Ծաղիկը թառամում է ու մեռնում, բայց նա՝ ում ծեռին որ էր՝ յաւիտեան չպիտի արտասուի նրա համար:*

*Էս լաւ իմացած եղիր, եղբայր, եւ ուրախ կացիր:*

*Բացարձակ լռութիւնն է միայն, որ պսակում է երգի կատարելութիւնը:*

*Կեանքը ոսկեղէն ստուերները սուզելու համար՝ թեքւում է արեւմուտք:*

*Սէրն էլ, արցունքների երկինքը համբառնալու համար՝ պէտք է թողնի իր խաղերն ու սպառի բոլոր տանջանքը:*

*Ես լաւ իմացած եղիր, եղբայր, եւ ուրախ կացիր:*

*Մենք բոլորս էլ շտապում ենք ծաղիկներ քաղելու՝ որ սլացող քամին նրանց չտանի:*

*Ու մեր արիւնը եռում է ուժգին՝ աչքերը փայլատակում են — երբ մենք քաղում ենք էն համբոյրները. որ պիտի կորչէին, եթէ յապաղէինք:*

Ազահ, անհամբեր է մեր կեանքը, բուռն են ցան-կութիւնները, որովհետեւ ժամանակը զարկում է զան-գերն յառաջընթացման:

Էս լա՛ւ իմացած եղիր, եղբա՛յր, եւ ուրա՛խ կացիր:

Մենք էնքան ժամանակ էլ չենք ունենում, որ մի բան բռնենք, աւարտենք ու թողնենք աշխարհում:

Ժամերն իրենց ցնորքները փէշերի տակ թաք-ցրած գաղտնագողի անցնում են ճեպով:

Կարճ է մեր կեանքը, ընկեր, մի քանի օր է նա տուել սիրոյ համար:

Իսկ եթէ տուած լինէր էդ օրերը տանջանքին ու աշխատանքին՝ կեանքն անվերջ կերկարէր:

Էս լա՛ւ իմացած եղիր, եղբայր, եւ ուրախ կացիր:

Գեղեցկութիւնը մեզ սիրելի է ու դուրեկան, որովհետեւ նա էլ է պարում նոյն փութանցիկ նւագի եղանակով՝ ինչպէս մեր կեանքը:

Գիտութիւնը բաղձալի է մեզ միայն նրա համար, որ մենք երբէք ժամանակ չենք ունենալու լրիւ տիրապետելու նրան:

Ամեն ինչ կատարւել է, ամեն ինչ վերջացել է Նախայաւիտեան Երկնքում:

Բայց երկրի խաբուսիկ պատրանքների ծաղիկներին մահն է միայն յաւերժ թարմութիւն շնորհում:

Էս լաւ իմացած եղիր, եղբա՛յր, եւ ուրախ կացիր:

## LXIX

*Ես հալածում եմ ոսկի եղնիկին: Դուք ծիծաղեցէք, ընկերներ, իսկ ես կ'սլանամ տեսիլքի ետեւից, որ խուսափում է ինձնից, փախչում:*

*Ես վազում եմ սարերով ու ձորերով, թափառում իմ անանուն վայրերում — ես քշում եմ ոսկի եղնիկին:*

*Դուք գնում էք շուկայ ու մթերքներով ծանրաբեռնուած տուն վերադառնում. իսկ ես տարուեցի անտուն քամիների հմայքով երբ եւ ո՛րտեղ — չգիտեմ:*

*Սրտումս ոչ մի հոգս չկայ եւ ունեցածն էլ թողել եմ ետեւ: Ես վազում եմ սարերով ու ձորերով, թափառում եմ անանուն վայրերում. ես հալածում եմ ոսկի եղնիկին:*

# LXX

*Ես յիշում եմ մանկութեանս մի օրը:*

*Թղթէ նաւակ էի բաց թողնում առուում:*

*Ցուլիսեան խոնաւ օր էր. մենակ էի ես էնտեղ ու երջանիկ իմ խաղով:*

*Ես թղթէ նաւակս բաց թողի առուում:*

*Յանկարծ մռայլ ամպերը կուտակուեցին, քամին եղաւ փոթորկաբեր ուժգնութեամբ ու սեղաւ թափուեց երկնքից:*

*Պղտոր ջրերը խառնուեցին առւին, առուն ուռաւ, վարարեց ու խորտակեց իմ նաւակը:*

*Աշտապած ինչս ինձ միտք էի անում՝ թէ փո-թորիկը դիտմամբ սաստկացաւ, որ կործանի իմ բախտը — թէ՝ նրա ամբողջ չարութիւնն ուղղուած էր իմ դէմ:*

*Յուլիսի թխպոտ երկար օր է էսօր, իսկ ես, ես մէկիկ մէկիկ յիշում եմ կեանքի էն խաղերը, որ տա-նում եմ ուել:*

*Անիծում եմ բախտս իր չար հանաքների հա-մար — երբ յանկարծ յիշում եմ իմ թղթէ նաւակը, որ խորտակուեց առուում:*

## LXXI

*Օրը դեռ չի վերջացել ու շուկան չի փակվել շուկան գետի եզերքին։*

*Ես կարծում էի, որ իմ ժամանակը մեոցրել եմ ու կորցրել ամեն ինչ՝ մինչեւ վերջին կոպէկը։*

*Բայց ոչ, եղբայր իմ, դեռ ես էլի բան ունեմ։ Բախտն ինձ միանգամից չի կողոպտել։*

*Առուտուրը վերջացաւ։*

*Երկու կողմից էլ հաշիւները մաքրեցին ու հիմա ժամանակ է, որ ես տուն գնամ։*

*Հը, դռնապան, հարկ ես պահանջում ինձնից։*

*Մի վախի, ես էլի բան ունեմ։ Բախտն ինձ միանգամից չի կողոպտել։*

Քամու օրօրը փոթորիկով է սպառնում եւ արեւ-մուտքում կուտակվող ամպերը լաւ բան չեն գուշակում:

Խաղաղ ջրերը սպասում են քամուն:

Շտապում եմ անցնել գետը՝ քանի գիշերը վրայ չի հասել:

Հը, լաստավար, քեզ պէտք է վճարեմ:

Ոչ, եղբայրս, դեռ էլի բան է մնացել մօտս: Բախտն ինձնից բոլորը չի խլել:

Ճամփու կողքի՛ն, ծառի տակ նստած է մուրաց-կանը: Աւա՜ղ, նա երկչոտ յոյսով նայում է դէմքիս:

Նա կարծում է, թէ էսօրւայ աշխատանքով ես հարստացել եմ:

Այո, իմ եղբայր, մի բան դեռ մնացել է: Բախտն ինձնից բոլորը չի խլել:

Գիշերն աւելի է մթնում, ճամփան դատարկւում է: Լուսատտիկներն առկայծում են թփերում:

Ո՞վ ես դու, որ յամրընթաց գաղտնագողի հե-տեւում ես ինձ:

*Գիտեմ, գիտեմ — դու ուզում ես յափշտակել իմ ծեռք բերած աշխատանքս: Ես քեզ չեմ յուսախաբի:*

*Ոռոմնետեւ դեռ էլի բան ունեմ ես: Բախտն ինձնից բոլորը չի խլել:*

*Կէս գիշերին տուն եմ գալիս դատարկ ձեռներով:*

*Անքուն ու տագնապալի աչքերով դու անհամբեր սպասում ես ինծ իմ դռան մօտ:*

*Երկչոտ թռչունի պէս դու գիրկս ես ընկնում կրքոտ, անզուսպ սիրով:*

*Ո՜հ, Աստուած, այո, այո, ես դեռ շատ բան ունեմ:*

*Բախտն ինծ միանգամից չկողոպտեց:*

## LXXII

Տաժանելի երկունքի օրերով ես շինեցի իմ տաճարը՝ անդուռ եւ անպատուհան: Հաստ պատերը շարւած էին ահագին քարերից:

Ես ամեն ինչ մոռացայ. ես փախայ աշխարհից: Հմայւած հայեացքով դիտում էի էն կոթողը, որ ես կերտել էի բեմի վրայ:

Գիշեր էր միշտ տաճարում, միայն կանթեղներն էին այրւում խնկաբոյր իւղով:

Կնդրուկի անվերջ ծուխն իր ծանր մխի օղակներով կաշկանդում էր իմ սիրտը:

*Գիշեր ցերեկ անքուն ես տաճարի պատերին փորագրեցի մտացածին սքանչելի ձևեր — խառն ու առեղծվածային նախշերով – թևավոր ձիեր, ծաղիկներ մարդու դէմքով, կամ այլ օձի մարմնով:*

*Ոչ մի երթիկ չկար, որով ներս մտնէր սևւոցը տերևների, երգը թռչունների կամ աղմուկն աշխատող գիւղի:*

*Միակ ձայնը, որ լսում էր մռայլ գմբեթի տակ, դա իմ երգած շարականներն էին:*

*Իմ միտքը դարձաւ նուրբ ու խաղաղ, ինչպէս բարակ քողն ու զգացումներս հանգամն՝ ցասումները սուզւեցին:*

*Չ՚գիտէի՝ ինչպէս էր ժամանակն անցնում, մին-չեւ որ շանթահար կայծակը երկնքից զարկեց տաճարին ու ցաւն ընկաւ սիրտս:*

*Կանթեղները կարծես ամաչեցին ու գունատուեցին, իսկ պատերի նախշերը՝ շղթայուած երազների նման — ապշած աչքերով դիմաւորեցին լոյսը՝ կարծես չ՚հասցրին ժամանակին թաքնուել:*

*Ես նայեցի բեմի կոթողին: Նկատեցի, որ նա ժպտում է — շունչ առնելով Աստծոյ կենսատու շփումից:*

*Ու գիշերը, որ ես բանտարկել էի, թափ տուեց իր թեւերն ու չքացաւ:*

## LXXIII

*Դոյզ են քո հարստութիւնները, իմ համբերատար, արջնաթոյր Մայր Երկիր:*

*Դու աշխատում ես կշտացնել բոլոր մանուկներիդ, բայց կերակուրդ քո նուազ է:*

*Կիսատ են քո մեզ պարգեւած ուրախութիւնները:*

*Ու դիմացկուն չեն մանուկներիդ համար քո վարպետօրէն ստեղծած խաղալիքները:*

*Դու չես կարող յագեցնել մեր ագահ յոյսերը՝ բայց մի՞թէ ես դրա համար քեզ կ'ծզեմ:*

*Քո ժպիտը թախծապարուր դուրեկան է աչերիս:*

*Քո սէրը, որ սահման չի ճանաչում, սիրելի է սրտիս:*

*Քո կրծքից, որով դու մեզ կերակրում ես, կեանք է հոսում եւ ոչ անմահութիւն — դրա համար էլ դու երբէք չես փակում աչքերդ:*

*Դարեր է արդէն ինչ դու ստեղծում ես և գոյներով, և երգերով, սակայն քո դրախտը դեռ չի գոյացել. կերտել ես միայն նրա տխուր նմանութիւնը:*

*Քո ամենահրաշագեղ արարչութեանց վրայ իջել է բոցն արցունքների:*

*Ես կատոքեմ քո լուռ հոգին իմ երգերով, իմ զգացումներս կ'ծուլեմ քո սիրոյ հետ:*

*Ես կերկրպագեմ քեզ տանջանքիս ժամին:*

*Ճանաչեցի քո պայծառ դէմքը ու սիրում եմ քո լքուած ու տխուր աճիւնը, ո՛վ Մայր Երկիր:*

## LXXIV

*Տիեզերքի հանդիսավոր ապարանքներում դաշտի հասարակ սէզը բազմած է միեւնոյն գորգի վրայ՝ արեւի շողերի ու գիշերուայ աստղերի հետ միասին:*

*Ճիշտ էդպէս էլ իմ տաղերն անտառների ու ամպերի երգի հետ միասին տեղ ունեն տիեզերքի սրտում:*

*Իսկ դու, հարստութիւնների տէր, քո գանձերը մաս չունեն ոսկով շառափող արեւի ու երազող լուսնի քնքոյշ փայլի էն չնչին, անմեղ մեծութիւնից:*

*Քեզ չի՛ դիպչելու օրհնանքն ամենակալ երկնքի:*

*Եւ երբ մահը գալիս է՝ գանձերդ գունատւում են, թառամում ու փոշի դառնում:*

## LXXV

Կէս գիշերին ճգնաւոր դառնալ ցանկացողը խօսեց՝

Հասել է ժամը, որ ես թողնեմ տունս ու գնամ փնտրեմ Աստծուն։ Ա՜խ, ո՞վ էր էսքան ժամանակ ինձ պահում էստեղ՝ մոլորութեան մէջ։

— Ես, շշնջաց Աստուած, բայց մարդու ականջները չլսեցին։ Անկողնի մի կողքին խաղաղ պառկած էր կինը քնած մանուկը ծոցին։

— Ո՞վ ես դու, որ էսքան ժամանակ ինձ յիմարացրիր ու խաբեցիր — ասաց մարդը։ Ու կրկին լսեց՝ «Աստուած»․ բայց մարդը չիմացաւ։

*Յանկարծ երեխան լաց եղաւ քնի մէջ ու աւելի մօտեցաւ մօրը:*

*Եւ հրամայեց Աստուած՝ "Սպասիր, պանդոյր, մի՛ թողնի քս տունը„ նա կրկին չ՛լսեց:*

*Ու դառնօրէն հառաչեց Աստուած՝*

*— Ի՞նչու է ինձ թողնում իմ ստրուկն ու գնում ինձ փնտրելու:*

## LXXVI

Եռում էր շուկան տաճարի առաջ:

Վաղ առաւօտից անձրեւ էր գալիս ու օրը մօտենում էր վախճանին:

Ամբոխի հրճւանքից էլ աւելի զւարթ էն փոքրիկ աղջկայ պայծառ ժպիտն էր, որ մի կոպէկով արմաւի տերեւից շինած սուլիչ էր գնել:

Սուլիչի զիլ շւոցը ճախրում էր ժխորի մէջ ու խլացնում ամբոխի քրքիջն ու աղմուկը:

Բազմութիւնն իրար էր գալիս ու մարդիկ անդադար հրում էին միմեանց: Ճամբան կորել էր ցեխի մէջ, գետը վարարել եւ անընդհատ սելաւից դաշտը ծածկւել էր ջրով:

Ամբոխի հոգսերից էլ ավելի ծանր էն փոքրիկ տղայի վիշտն էր, որ մի գրոշ չուներ՝ նախշուն ծեռնափայտ գնելու:

Նրա մտածկոտ աչքերը կարոտով նայում էին խանութին ու մարդկանց էս հսկայ բազմությունը դարձնում էնքա՜ն խեղճ ու ողորմելի:

## LXXVII

*Արևմուտքի երկրներից եկած բանուորն իր կնոջ հետ եռանդով փորում էր գետինը՝ թոնիր շինելու համար:*

*Նրանց փոքրիկ աղջիկն ամեն օր գետափն էր գնում. նա էնտեղ թաս ու պղինձ էր լվանում շարունակ:*

*Պստիկ եղբայրը՝ թխադէմ, տկլոր, գլուխն ածիլած, ոտն ու ձեռը ցխոտ — ամեն անգամ գնում էր իր քրոջ հետ ու համբերութեամբ սպասում էր նրան էն թմբի վրայ, ուր քոյրը կասէր:*

*Ընտանեկան հոգսերի ծանր պարտականութեամբ տարուած իր մօր պարկեշտ օգնականուհին տուն էր գալիս լիքը կուժը գլխին, ձախ ձեռին պսպղուն պղինձը, աջով երեխային բռնած:*

Մի օր ես տեսայ էս տկլոր պստիկին նստած՝ ոտները մեկնած:

Քոյրը ջրի մէջ աւազով քերում էր կուժը՝ պտտելով իր ձեռքում:

Ափի մօտ արածում էր մի փափկաքուրք գառնուկ:

Նա մօտեցաւ էն տեղին, որտեղ նստած էր պստիկն ու յանկարծ բարձր ձայնով մայեց:

Պստիկը վեր թռաւ ու ճչաց:

Քոյրը թողեց ամաններն ու վազեց եղբօր մօտ:

Նա մի ձեռքով խտտեց եղբօրը, միւսով գառ-նուկն ու, բաժանելով նրանց իր փաղաքշանքները, սիրոյ հանուր օղակով միացրեց կենդանուն ու մարդուն

# LXXVIII

*Մայիսին էր: Տոթ օրը թւում էր անվերջ երկար:*

*Արեգջեր տաք գետինը ճեղքւում էր ծարաւից:*

*Մէկ էլ լսեցի գետափից կանչող մի ձայն — “ե՛կ, սիրելիս„:*

*Փակեցի գիրքս ու բաց արի պատուհանս՝ որ տեսնեմ:*

*Մի ահագին գոմէշ՝ ցեխի մէջ կորած, համբերատար ու հանգիստ աչքերով ու մի տղայ, մինչ ծնկները ջրի մէջ, կանչում էր նրան՝ իր հետ լողանայ:*

*Ժպտացի ցաւակցօրէն ու ինչ որ քաղցր հրճւանք զգացի իմ սրտում:*

# LXXIX

*Ես յաճախ միտք եմ անում ինքս ինձ՝ որտեղ է թաքնուած մարդու եւ անլեզու անասունի իրար հասկանալու սահմանը:*

*Արարչութեան հեռաւոր արշալոյսի ո՞ր նախնական դրախտով էր անցնում էն սովորական նեղ ճամբան, որով նրանց սրտերն այցելեցին իրար:*

*Նրանց մշտական քայլերի հետքը ճամբու վրայ դեռ չի կորել՝ թէպէտ եւ վաղուց է մոռացուած ազգակցութիւնը նրանց:*

*Բայց մինչեւ օրս էլ, երբեմն, որեւ է երկնային անխօս երաժշտութեան մէջ յանկարծ զարթնում է էն*

*մշուշապատ յիշողութիւնն ու անասունը քնքոյշ հաւատով մարդու աչքերին է նայում, մարդն էլ նրա աչքերին՝ իրեն զւարճացնող սիրով:*

*Ասես երկու դիմակաւոր ընկեր հանդիպում են իրար ու մօտաւորապէս ճանաչում միմեանց դիմակի տակից:*

# LXXX

Քո մի հայեացքով, ո՜վ հրաշագեղ կին, դու կարող էիր բանաստեղծների քնարից երգերի բոլոր գանձերը շորթել:

Բայց դու անլուր ես փառաբանութեանը՝ դրա համար էլ ես երգում եմ քեզ:

Դու կարող էիր աշխարհիս բոլոր հպարտ, դիտապայծառ գլուխները քո ոտերիդ մօտ ժողովել:

Բայց դու ընտրում ես միայն քո սիրածներին՝ փառքին անծանօթ-որ նրանց երկրպագես, դրա համար էլ ես երկրպագում եմ քեզ:

*Քո ամենակատար ձեռներիդ շոշափումն ար-քայական փառքին իսկ կարող էր փայլ տալ:*

*Բայց դու նրանցով փոշի ես մաքրում ու կա-հավորում քո համեստ տունը՝ դրա համար էլ ես ակնա-ծում եմ քեզնից:*

# LXXXI

*Ի՞նչ ես էդպէս կամաց շշնջում ականջիս, Օ, Մահ, իմ Մահ:*

*Իրիկնադէմին, երբ ծաղիկները յոգնած կախ են գցում իրենց գլուխներն ու նախիրը տուն է դառնում արօտից՝ ի՞նչու ես թաքուն գալիս ինձ մօտ ու շշնջում ես խօսքեր, որ ես չեմ հասկանում:*

*Էդպէ՞ս պիտի դու ինձ հետ պսակւես:*

*Սառը համբոյրների ու մեղմ շշուկների քնեցնող հաշիշո՞վ ես ուզում ինձ յաղթել, Օ, Մահ, իմ Մահ:*

*Մի՞թէ հանդիսաւոր խնճոյք չենք ունենալու մեր հարսանիքին:*

*Ու պսակ չե՞ս դնի քո ոսկէկուռ գոռւզ մազերիդ:*

*Մի՞թէ ոչ ոք չի ընթանայ առջեւից քո դրօշակով ու մի՞թէ գիշերը չի բոցավառուի քո հրակարմիր ջահերից, Օ, Մահ, իմ Մահ:*

*Ե՛կ յաղթականօրէն, հանդիսաւոր թող հնչեն փողերը ծովի, եկ անքուն գիշերին:*

*Հագցրո՛ւ ինձ հիրիկ հագուստը, ծգիր վրաս ծիրանի ծածկոցն ու բռնիր ձեռքիցս, տա՛ր ինձ:*

*Թող քո կառքը կանգնած լինի իմ դռան մօտ ու ձիաները խրխնջան անհամբեր:*

*Բարձրացրո՛ւ իմ ծածկոցն ու հպարտ նայիր իմ դէմքին, Օ, Մահ, իմ Մահ:*

## LXXXII

Մենք էս գիշեր մահ ենք խաղալու՝ իմ նշանածն ու ես:

Սեւ է գիշերը, կամշոտ են ամպերն երկնքում ու գազազած ալիքները ծովում:

Մենք թողինք մեր երազների անկողինը, բաց արինք դռներն ու դուրս եկանք՝ իմ նշանածն ու ես:

Նստեցինք ճոճում ու բարկ քամիները մեզ հրում էին ետեւից ուժգնութեամբ:

Վայելքից ու երկիւղից իմ նշանածը թռչկոտում էր, դողում ու սեղմւում էր կրծքիս:

Ես երկար ծառայեցի նրան գուրգուրանքով:

Ծաղիկներից անկողին շինեցի նրա համար ու դռները փակեցի, որ ուժեղ լոյսն աչքերին չընկնի:

Ես մեղմ զգուշութեամբ համբուրում էի նրա շուրթերն ու ականջին շշնջում քնքոյշ խօսքեր՝ մինչեւ որ խոնջացած՝ բոլորովին թուլացաւ:

Նա մութ քնքշութեան անսահման մշուշն ընկղմւեց:

Իմ զգւանքներին չէր պատասխանում. իմ երգերն իսկ չկարողացան արթնացնել նրան:

Էն գիշերը վայրի անապատից փոթորկի կանչը հասաւ մեր ականջին:

Իմ նշանածը ցնցւեց ու վեր թռաւ. սեղմեց իմ ձեռքն ու դուրս գնաց:

Քամին ծփում էր նրա վարսերը, ծածանում ծածկոցն ու սօսափում կրծքի ծաղկէ հիւսկէն:

Մահի հարւածը նրան դէպի կեանք մղեց:

Մենք կանգնած ենք դէմ առ դէմ, սիրտ առ սիրտ՝ իմ նշանածն ու ես:

# LXXXIII

*Նա ապրում էր սիմինդրի արտի ծայրին՝ բլրի հովտում -- դարեւոր ծառերի հանդիսաւոր ստուերների արանքից վազող աղբիւրի մօտ: Կանայք յաճախ գալիս էին իրենց կժերը լցնելու, ճամբորդները սիրում էին էնտեղ հանգստանալ ու զրուցել:*

*Նա ապրում էր էնտեղ. աշխատում էր ու երազում զանգակ աղբիւրի կարկաչի տակ:*

*Մի օր. իրիկնադէմին, ամպերով ծածկուած սարի կատարից մի օտարական իջաւ: Նրա գռուզ մազերը խռնուած էին քնած օձերի նման: Մենք զարմացած հարցրինք՝ "ո՞վ ես դու„ բայց նա չպատասխանեց ու*

նստեց զուլալ աղբիւրի մօտ՝ դիտելով էն խրճիթը, որտեղ նա էր ապրում: Այնից մեր սիրտը դողաց ու մինչեւ գիշերը վրայ չհասաւ՝ տուն չգնացինք:

Առաւօտը, երբ կանայք դէօղարի ծառերի տակ կարկաչող աղբիւրն եկան ջրի՝ նկատեցին, որ նրա խրճիթի դուռը բաց է, իսկ ինքը տանը չէ: Ո՞ւր էր նա քնքոյշ ժպիտն երեսին:

Դատարկ կուժն ընկած էր գետնին ու ճրագն ինքն իրեն այրւել էր անկիւնում: Ոչ ոք չգիտէր՝ ուր է գնացել նա. անհետացել էր եւ օտարականը:

Մայիսին արեւը տաքացաւ ու ձիւնը հալւեց: Մենք նստել էինք աղբիւրի մօտ ու լաց էինք լինում: Մենք ուզում էինք իմանալ՝ “աղբիւր կա՞յ էն երկրում, ուր նա գնացել է, կարո՞ղ է լցնել իր կուժն էս շոգ, ծարաւ օրերին:„ Ու վախեցած հարցնում էինք իրար “եւ էս մեր դիմացի սարերի ետեւում կայ արդեօք որեւէ աշխարհ:“

Ամառուայ գիշեր էր: Թեթեւ քամին փչում էր հարաւից. ես նստած էի նրա դատարկ սենեակում, որտեղ ճրագը դեռ չէր վառւած: Յանկարծ սարերը

չքացան իմ աչքից՝ կարծես վարագոյր բացուեց: “Ախ, դա նա է գալիս: Ի՞նչպէս ես, բալաս, երջանիկ ես: Ի՞նչպէս դու անկիւն գտար էստեղ՝ բաց երկնքի տակ: Ափսոս, մեր աղբիւրն էլ էստեղ չի, որ քո ծարաւը կտրի:”

“Նոյն երկինքն է եւ էստեղ, ասաց նա — միայն ազատ ամպաբերձ լեռներից, նոյն աղբիւրն է, որ գետ է դարձել եւ հէնց նոյն գետինն է, որ ընդարձակուել է հարթավայրի պէս:

“Էստեղ ամէն ինչ կայ, հառաչեցի ես — միայն մենք ենք պակաս:” Նա տխրութեամբ ժպտաց՝ “Դուք իմ սրտումն էք:” Ես զարթնեցի ու լսեցի աղբիւրի կարկաչն ու դ է օ ղ ա ր ի սօսափիւնը գիշերով:

## LXXXIV

Բրնձի կանաչ ու դեղին արտերի վրայով սլանում են քամուց հալածուած ստուերներն աշնան ամպերի, արեւն էլ վազում է նրանց ետեւից:

Մեղուները մոռացել են մեղր ժողովելու մասին, լոյսից հարբած նրանք խռնւում են խելագար ու աղմկում:

Գետի կղզիների բադերն ուրախութիւնից ճչում են, ամեն մի դատարկ բանի վրայ:

Տուն չ'գնանք էսօր, եղբայրներ, թող ոչ ոք գործի չերթայ:

***Նկէք գրոհ տանք դէպի կապոյտ երկնքի բար-ձունքներն ու վազելով կլանենք, յափշտակենք տարա-ծութիւնը:***

***Շողում է, ճախրում ծիծաղն օդում՝ ասես փրփուր լինի ջրի հոսանքում:***

***Նկէք, եղբայրներ, առաւօտն անց կացնենք ան-միտ ու դատարկ երգերով:***

# LXXXV

Ո՞վ ես դու, ընթերցող, որ հարիւր տարի յետոյ պիտի կարդաս իմ երգերը:

Գարունքի էս փարթամ շքեղութիւնից քեզ ոչ մի ծաղիկ չեմ կարող ուղարկել, ոչ էլ մի հատիկ ոսկի շող էս ամպերից:

Բա՛ց քո դուռն ու դիտիր հեռուն:

Քո փթթող պարտիզում հաւաքիր անուշաբոյր յիշողութիւններ էն ծաղկանց մասին, որ թոռմել են հարիւր տարի առաջ:

Ու երանի թէ զգայիր հոգուդ ուրախութեան մէջ էն կենսալի բերկրանքը, որն երգեց մի գարնան առաւօտ՝ ղրկելով իր հրճուալի ձայնը հարիւր տարիների միջից:

Երգ Էջ